# ՊԻՈՆԵՐ



ՕՐԳԱՆ

ՀԼԿՅԵՄԿԿ ԿԻՑ



ՊԳ

ԿԵՆՏ-ԲՅՈՒՐՈՅԻ

ՕԳՈՍՏ.

№ 1

1925

ՊԱՏՎ. № 4441



ՅԵՐՐՈՐԴ ՏԱՐԻ

Բանվոր դասակարգի պայքարում — պատրա՛ստ ես.

# ՊԻՈՆԵՐ

ՊԱՏԱՆԵԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ԱՄՍԱԳԻՐ

№ 1
1 օգոստոսի 1925 թիվ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆ
Հ.Լ.Կ.ՅԵ.Մ.Կ.Կ.-ին կից Պ.Պ.Կ-ԲՅՈՒՐՈՅԻ

ՕՐԳԱՆ ՊԱՏ. ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԿԵՆՏՐ. ԲՅՈՒՐՈՅԻ

## ԼԵՆԻՆՅԱՆ ԴՐՈՇԻ ՏԱԿ

*Չորս տարի սրանից առաջ Խորհրդային Հայաստանում սկսեց ծավալվել պատանեկական կոմունիստական շարժումը:*

*Բանվորների և գյուղացիների յերեխաները կազմակերպվեցին Հոկտեմբերյան Հեղափոխության դրոշի տակ կոմյերիտմիության անմիջական ղեկավարությամբ:*

*Առաջին տարիները մասսայական փորձի տարիներ եյին, լինում եյին սխալներ, թերություններ, սակայն աշխատանքի ընթացքում սխալները կամաց-կամաց վերանում եյին կոմունիստական պատանեկական շարժումը լցվում եր հեղափոխական բովանդակությամբ ու աշխատանքի նոր թափով:*




*1921 թվին կար ընդամենը 900 պիոներ, այժմ չորրորդ տարվա սահմանին մենք ունենք 18,916 պիոներ և մի քանի հազար ել հոկտեմբերիկներ:*

*Հայաստանի պիոներական կազմակերպությունը ընդգրկել է և ազգային փոքրամասնություններին՝ թյուրքերին, ռուսներին, մոլականներին, հույներին:*

*Յեզիդիների նահապետական կենցաղի մեջ են մտել և համաշխարհային հեղափոխության մանուկ պիոներները:*

*Պիոներական ջոկատները կարմրացրել են վողջ փոքրիկ Հայաստանը:*

*Թող յուրաքանչյուր կարմիր փողկապավորը լավ հիշե, վոր նա հեղափոխության պիոներ է և պետք է սովորի պայքարել, աշխատել, սովորել — ահա պիոների նպատակը: Միայն այս դեպքում նա կդառնա լենինյան կոմյերիտմիության իսկական փոխանորդը:*

---

**ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆԸ ՀԱՐԿԱՎՈՐ ԵՆ ԱՌՈՂՋ ՓՈԽԱՆՈՐԴՆԵՐ**

**ՊԻՈՆԵ՛Ր, ՄԻՇՏ ԱՌՈՂՋ, ՄԻՇՏ ՊԱՏՐԱՍՏ:**



*
* *

Ճաշին մոտ էր։

Արեգակն այրում էր տապով։

Տափաստանը արևի կիզիչ ճառագայթների տակ չքացող հատուկենտ ստվերներով ծույլ-ծույլ անձնատուր էր լինում նրան։

Ցիրուցան փոսաշատ ճյուղերով մացառները դեպի վեր էին ցցվել։

Օդը չէր բավում։

Գոնե մի անձրև, գոնե քամի!..

Ջալումի քարավանը հանգստանում էր։ Յերեք ուղտ յեվ յոթը մարդ։

Ու մեկ էլ փոքրիկ Հաբին.

Բրոնզեգույն մարմնով, թուխ դեմքով յեվ հանդուգն նայվածքով։

Ջալումը հարուստ վաճառական է. նա Պարսկաստանից Հայաստան ապրանքներ է բերում, իսկ Հաբին ծառայում է մոտը։

Հաբին Ջալումին չի սիրում, իսկ Ջալումը Հաբիին։ Ջալումը Հաբիին ծեծում է, բայց Հաբին համբերում է—պետք է ապրել։

Ջալումը կանչեց Հաբիին ու ասաց

—Տես, շան լակոտ, հենց վոր լուսնյակի արծաթափայլ բիծն երևա, կզարթեցնես մեզ։ Մենք առաջ ճամփա պետք է կտրենք։

Ու տվեց վզակոթին։

Հաբիի աչքերը փայլատակեցին, նա գայլուկի նման կրճտացրեց ատամները։

— Ծերո՛ւկ, մի ծեծիր։

— Հա—ա՞։

— Յերդվում եմ ալլահով։ Յես շուն չեմ։

Ջալում բեյի սպիտակ մորուքը դողդողաց, շրթունքները սեղմվեցին, դեմքը, գիշատիչ ուրուրի նման, դուրս ցցվեց ու նա վրա բերեց մեկ էլ խփելու։

Հաբին սպասում էր, յեվ նրա փոքրիկ կուրծքը բարձրանում էր կատաղաբար։

Ծանոթ ու դաժան ձեռքը բարձրացավ ու մի անգամ էլ շրը՛ըխկ, ծանր իջավ Հաբիի յերեսին։

Հաբին ընկավ չոքերին, Ջալումը հռհռում էր։

— Հա՜, հա՜, հա՜... հռհռացին Ջալում բեյի գորգավաճառ ընկերները։

Միայն Դավրիշ-Բաբա առաջնորդը չէր ծիծաղում՝ հոնքերը խոժոռած մի կողմ էր նայում։



Հաբին ընկավ չոքերին,
իսկ Ջալումը հռհռում էր...

*
* *

Քարավանը նիրհում էր, իսկ Հաբին հսկում էր նրան։

Միայն նրա կուրծքը չէր կարողանում հանգստանալ ու սիրտն էլ բաբախում էր։

Ծանր էր Հաբիի համար։

— Ջալումն ի՞նչու յե ծեծում։

Հաբին աչքերը հառեց կապուտակ հեռուն, ուր ոսկեց հյուսված կախվել էր Մասիսը։ Հեռվից քամին պտտացնում էր փոշին ու մրրիկի պես գալիս քարավանի վրա։

Հին վրանը Ջալումի տատանվեց, ճռճռաց ու նորից հանգստացավ։ Հաբիի մտքերը քամու պես պտտվեցին, խառնվեցին ու շղթայվելով կախվեցին հսկայական ժայռերով։

— Հեյ, Ջալում, զգույշ։ Հաբին վիրավորանքը չի ներում

*
* *

Հաբին փոքր է, ընդամենը տասներեք տարեկան։ Բայց այդ տասներեքից ամեն մեկը իր խոր հետքն էր թողել նրա վրա։

Յեվ յերբ Ջալումը ծեծում է նրան, Հաբին համրում՝ է

— Վոչի՛նչ, եղ տասներեքը, բայց վայ քեզ յերբ իմ տասնյոթը լրանա։

Հարիի Բայրամ-Մահլեցի ընկերներն էլ իրեն պես բաղցած, վոտաբոբիկ ու ցնցոտիների մեջ են։

Հարին նրանց առաջնորդն է։

Յեվ յերբ տարացած խաղերից հետո խումբը նստվում է վոլորապտույտ Քիփրի—չայի պաղ ջրի մեջ, Հարին հեռու յե կորում Քիփրի-չայը հոսանքին հակառակ։

Հարին սրախ է ու գիտմամբ խեղդում է իրեն։

— Հարի՛, հեա դառ, Հարի՛, կանչում են ընկերները ներքեվից։

Հարին դարձյալ ալիքների մեջ է ու ձկան պես սահում է ներքեվ։

— Ի՞նչ է, կարծում եյիք կխեղդվե՞մ։ Մի վախենաք։ Տեսնու՞մ եք մարմինս վրայի այս ցոլերը։ Սրանք իմ տիրոջ՝ Ջալում բեյի մտրակի համբույրներն են։ Ի՞նչպես կարող եմ սրանց հետ խեղդվել։

Ու նա վագրի ձագի պես փայլատակում եր հայացքով։

Իսկ արեվի ցոլքն արդեն փռվել եր յերկնքի վրա։ Իջնում եր զով ու կապույտ յերեկոն...

Տղերքը դարձյալ ցնցոտիներումն եյին։

— Գնանք Դավրիշ-բաբայի մոտ։ Թող նա պատմի մեզ։

Ո՜հ, նրանք վո՛րքան սիրում են Բաբայի այդ պատմությունները։



* * *

Բաբան Ջալում-բեյի քարավանի առաջնորդն եր։ Դավրիշ-բաբան իմաստուն ծերուկ եր։ Ի՞նչեր ասես, վոր չի տեսել իր կյանքում։ Վո՞րտեղ ասես չեր յեղել։

Յեվ Բաբան չեր սիրում փաշաներին, հայհոյում եր մոլլաներին։

Մեկ էլ ասում եր խցանե գլխարկներով ածիլված մարդկանց։

Լուսնյակ գիշերները, յերբ անտառը նիրհում եր թռչունները լռում ու ձորի մեջ միայն Քիփրի-չայն եր աղմկելով զարնվում քարերին՝ Բաբան պատմում եր...

Ու մի անգամ Բաբան ասաց

— Անեծք նրանց, ովքեր փողն են հնարել յիվ...

Բաբան լռեց։

— Ի՞նչ, Բաբա, ասա՛...

— Մեկ էլ անիծյալ լինեն վոսկե ատամներով տարյերկրացիները։ Այդ նրանք են կռվացնում հայերին ու թյուրքերին։

Մի անգամ էլ Բաբան հարցրեց.

— Լսե՞լ եք Լենինի մասին։

Վոչ վոր չեր լսել, վոչ վոր չգիտեր։

Ու յերբ Բաբան ասաց.

— Լենինը մեր բարեկամն է ու պաշտպանը։ Նա աշխարհում ամենամեծ մարդն է,

Հարին հարցրեց.

— Ուրեմն յեթե Լենինն իմանա, ինձ կպաշտպանի Ջալումից։

— Իհարկե, պատասխանեց Բաբան։

Ու պատմեց, վոր Լենինի յերկրում չկան Ջալումի պես դաժան ու փաշաների նման արյունարբու մարդիկ, իսկ հայերն ու թուրքերը ապրում են համերաշխ։

Յեվ եղի շատ բան։

Այդ որվանից Հարին ու ցնցոտիներով տղաները հաճախ մտածում ու խոսում եյին Լենինի մասին։

Մի անգամ, յերբ Դավրիշ-Բաբան քարավանի հետ վերադարձավ, եղի կանչեց տղաներին։

Հարին լավ եր հիշում այդ գիշերը։

Ցուրտ եր, սարսափելի ցուրտ։ Յերբեք չեր յեղել այդքան ցուրտ։ Թաց փայտերից խարույկը թշշում եր կատաղի ու բոցերի յերկար լեզուներով նրանից փետացած ձեռքերն ու վոտքերը լիզում։ Ուղ տերը փնչացնում եյին ջղայնորեն։ Դավրիշ-բաբան մի տեսակ արտասովոր եր։

Ո՛հ, վորքան սիրում են Բաբայի պատմածները։

— Հիշու՞մ եք Լենինին,—ասաց նա

— Այո՛։

Ու դողդոջուն ձայնով ավելացրեց.

— Լենինը մեռավ։

Յերբեք, յերբեք կյանքում այդպիսի ցավ ! զգացվել։

Ինչ վոր ծանր բան սեղմեց Հարիին։

Ինչ վոր ճմլեց ցնցոտիներով տղաներին։

Յեվ այդպես նստած եյին շատ ժամանակ...

Խարույկը հանգավ... Ցրտեց... Լալիս եյին։

Բաբան վեր կացավ.

— Յերդվեցեք, վոր յերբ մեծանաք, կգնաք Լենինի ուղիով։

Ու բոլորը յերդվեցին խարույկի առաջ։

* * *

Հիշում է Հարին ու եղի շարունակ նրա գլուխը մի միտք է ծեծում։

— Հեյ, Ջալում, դու սպասիր...

Մտաբերեց կամացուկ Դավրիշ-Բաբային։

Բաբան քնած եր ուղտի մոտ։

— Դավրիշ-Բաբա, Դավրիշբաբա, — հազիվ լսելի ձայնով շշնջում է Հարին։

Բաբան զարթնեց։

— Ի՞նչ է Հարի։

— Դանակդ, Դավրիշ-Բաբա, — աղաչում է Հարին։

— Ի՞նչու համար

Բաբախում է Հարիի սիրտը, ամբողջ մարմնով դողում է Հարին։ Իսկ յեթե չտա՞։

— Բաբա ջան, տուր դանակդ։ Մորթեմ նրան... փախչեմ... հայերի մոտ, — աղաչում է Հարին։ Բաբան նայեց Զալումին, նայեց Հարիին։

— Հիմար, Զալումները շատ են էս աշխարհում։ Դանակներով նրանց հախիցը չես գա։ Հասկացի՞ր։

Հարին բարշ յեկավ գլխիկոր ու նորից նստեց բարձի վրա։

* * *

Յերբ լուսնյակի արծաթափայլ բիթն երևաց Հարին ել արդեն մտածեց։

— Ա՛յ թե վո՛նց հանար կանի Զալումի հետ։

Իր վողջ կյանքում Զալումը կ՚հիշի, յեվ ուրախացած Հարիի դեմքը փոխվեց ծիծաղով։

Հեռվում վառվեցին Յերևանի կրակները՝ Հարին դա գիտի։

— Դե՛հ ժամանակն ե, թե չե...

Հարին տեղից վեր թռավ, նետվեց արագ վրանի մեջ ու ամբողջ ուժով սուր թե կտաս Զալումին։ Զալումը մռնչաց ցավից, վեր թռավ քնաթաթախ։

Բայց հեռվից արդեն բռռում եր Հարին։

— Ղաչաղնե՛րը, ղաչաղնե՛րը։ Քարավանը իրար անցավ։ Մարդիկ վազեցին դեպի ուղտերը յեվ դողում եյին յերկյուղից։

Միայն Դավրիշ-Բաբան եր հանգիստ, հիմա յել նա եր հեհում։

— Հանգստացե՛ք, ղաչաղներ չկան, — են Հարին եր՝ փախավ Յերևան։ Հա՛, հա, հա՛...

. . . . . . . . . . . . . . . . . . . .

Վո՛նց եյին հայհոյում այդ գիշեր Զալումն ու նրա ընկերները գորգավաճառները։

* * *

Հարին Յերևանումն է ու թափառում է փողոցներում, շուկայում։

Հոգնեց Հարին ու զգաց քաղցը։

Գնաց շուկա։

Հազիվ ծռեց անկյունը, տեսնում է գալիս է Զալումը ընկերների հետ յեվ նկատել է իրեն։

Հարին չշփոթվեց բայց մտածեց՝ լավ է փախչեմ։

Իսկ Զալումը արդեն գոռում է.

— Բռնե՛ցեք դրան, բռնե՛ցեք...

Հարին, շուռ յեկավ ու դե՛ն փախիր...

Փախչում է Հարին. յեվ գիտի՝ յերբեք չի հասնի Զալումը նրան։ Հետ նայեց տեսավ՝ բախականին փախել է։

Հանկարծ... ոտքից փողոցից ու թրր՛րմփ ընկավ. յերեսը կպավ քարին։

Հարին ցավից կծկվեց։

Վեր կացավ, տեսավ՝ ոտքի մեջ է ու փոսից ել արյուն է հոսում։

Հիմա դժվար է փախչել. Զալումը կը հասնի։

Հարին լարեց ուժերը, նետվեց առաջ։

Բայց Զալումի յերկար, ճանկոտ ձեռքերը մեկնվեցին, ու՛ս կրունկ վզիցը։

Զալում, Զալում, անիծվես դու։ Յեվ Հարին թրմփաց մայթի վրա։

* * *



Ուշքի յեկավ Հարին։

Կամացուկ բաց արեց աչքերը, տեսնում է — պառկած է մաքուր սենյակում, թախտի վրա, իսկ մոտը կանգնած են աղջիկ ու տղա, կարմիր թաշկինակները վզին։

Հարին զարմացավ։ Վո՞րտեղ է նա։ Ուզեց վեր կենալ, բայց ցավից ճչաց։ Վոտը կապած եր։ Գլուխը նույնպես։

— Հարի՛ — կանչեց տղան։

Հարին զարմացավ, բայց չպատասխանեց։

— Հարի, վոտդ ցավու՞մ է։

Հարին գլուխը թափ տվեց այո, շատ.

— Հարի՛, դու փախու՞մ ես։

Հարին ելի լռեց։

Աղջիկը ժպտաց։ Ինչո՞ւ յես փախում, մենք քեզ բարեկամ ենք։ Զալումը չարանում է, վոր դու մեզ մոտ ես։

— Դու մեզ մոտ կմնաս Հարի։

— Ո՞վ եք դուք։

— Մենք պիոներ ենք։

Հարին մտածեց, բայց չհասկացավ։

— Իսկ վոր մեծանաք, կլինե՞ք ղաչաղ։

Անծանոթները ծիծաղեցին։

— Վո՛չ, ղաչաղ չենք դառնա։

Հարին տխրեց։

— Ձե, դուք իմ ընկերներս չեք։ Յես ղաչաղ կլինեմ։

Յեվ ելի Հարիի աչքերը փայլատակեցին, ձեռքերը սեղմեցին բռունցքի, ինչպես մի ժամանակ, էնտեղ՝ քարավանում, ու նա ավելացրեց.

— Վորպեսզի Զալումից վրեժս առնեմ։

Հարին հետ ընկավ ու կորցրեց գիտակցությունը։

* * *

Հարին զառանցում եր։

Զառանցում էր քարավանով, Բայրամ—Մահլայում ու յերեք որ ուշքի չեկավ։
Իսկ յերբ զարթնեց, արդեն լավ էր։ Կարմիր թաշկինակներով աղջիկն ու տղան էլի այնտեղ եյին յեվ Հաբին ուրախացավ։
— Յերբ առողջանամ, ինձ բաց կթողնե՞ք։
— Հա, իհարկե. բայց ո՞ւր պիտի գնաս։
Ո՛հ, Հաբին սիրում է ազատությունը։ Նա կարոտել է ազատ օդին, տափաստանին, մեծ-մեծ ուղտերին։ Նա շատ է սիրում քարավանի կյանքը յեվ մեկ էլ մի մարդու։
— Ո՞ւմ, հարցրեց աղջիկ,—հո՞րդ, մո՞րդ։
— Վոչ,—վո՛չ։
— Յեղբո՞րդ, քրո՞ջդ։
— Վո՛չ. յես նրան յերբեք չեմ տեսած։
— Ո՞վ է նա։
Հաբին տեղից մի քիչ բարձրացավ.
—Նա —Լենինն է, աշխարհում ամենամեծ մարդը։
Լսել եք նրա մ՞ասին։
Աղջիկը սեղմեց նրա ձեռքը, իսկ տղան ժպտաց։ Նրան ցույց տվին կրծքի նշանն ու ամեն ինչ պատմեցին։

* * *

Հաբին մնաց քաղաքում, նա արդեն պիոներ է կարմիր փզկապ է կրում։
Անցավ մեկ, յերկու ամիս։
Սկսվեց տերեվաթափը։
Ծառերը դեղնեցին ու սկսեցին մերկանալ։
Պարզ գիշերները յերկարել եյին, խորացել եյին յեվ Հաբիի մտքերը։
Յեվ յերբ մի անգամ կոլլեկտիվը հավաքվեց — նա ասաց.
— Յես պետք է գնամ մեր գյուղը՝ Բայրամ Մալլեն։ Այստեղ էլ ինձ անելու վոչինչ չկա։
Նրա ընկերները տխրեցին, բայց հասկացան վոր այդպես է պետք։
Ու յերբ քարավանի զանգակները ղողանջեցին, իսկ ուղտերը պատրաստվել եյին նորից ճանապարհին, կոլլեկտիվը հավաքվեց Հաբիի շուրջը։
Հրաժեշտի ժամանակ Հաբինը ասաց.
— Այժմ յես գիտեմ, թե ի՞նչպես պետք է կռվեմ Զալումների դեմ ու գիտեմ վոր այդ մենակ չեմ կարող անել։ Իմ ընկերներս կօգնեն ինձ։
Յեվ բաժանվելիս ընկերները յերկար թափահարում եյին հեռվից կարմիր փզկապներով։
Մի ամսից հետո կոլլեկտիվը Պարսկաստանից նամակ ստացավ։
«.....Բայրամ-Մահլայում արդեն պիոներական կոլլեկտիվ կա։ Պիոներներներին դուր է գալիս, յերբ, պատմում եմ նրանց Հայաստանի մասին։ Բայց յերբ մենք յերգում ենք—Զալումն ու մոլլեն փրփրում են։ Իսկ Դավրիշ Բաբան մեզ օգնում է։
Միշտ պատրա՛ստ։ Պիոներ Հաբի»։




# ՄԵՐ ՑԵՂԲԱՅՐՆԵՐԸ ԱՐԵՎՄՈՒՏՔՈՒՄ

## ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ ԳՈՐԾՈՒՄ ԵՆ

*Ս. Խ. Հ. Մ-Ի ԹԱՆԿԱԳԻՆ ՊԻՈՆԵՐՆԵՐ!*

Ցես ցանկանում եմ ձեզ պատմել, թե ինչպես մենք՝ Սպարտակյաններս* կռիվ յենք մղում Գերմանիայում։ Ցես կը բերեմ ձեզ նախընտրական կամպանյայից մի քանի դեպք։

Ամենից առաջ, սպարտակյաններս նկարում եյինք պլակատներ, տարածում թռուցիկներ, մի որ առաջ շրջում եյինք փողոցները և պահանջում, վոր բանվորները ձայն տան կոմունիստներին։

Ընտրության որը, առավոտը ժամը 9-ից, մեր խումբը հավաքվեց շրջանային ընտրության վայրը, վորտեղ յես բոլորի ուսից դեպի կուրծքը կպցրի թղթե ժապավեն, վրեն գրված «Ընտրեք՝ կոմունիստներին» այնուհետև խումբը շարք կանգնեց և թռուցիկներով, կարմիր դրոշակներով, հեղափոխական յերգեր յերգելով անցավ գլխավոր հրապարակները։ Պետք է հիշել վոր այդ որը քաղաքում հայտարարված եր պաշարողական դրություն։

Վոստիկանությունը յերեք անգամ ցրեց յերթը և արգելեց սպարտակյաններին յերգել։ Բայց նրանք կրկին հավաքվեցին. և սկսեցին նորից յերգել։ Վերջապես վոստիկանությունը կատաղեց և հայտարարեց, վոր յեթե յերեխաները կշարունակեն յերգել, նրանց կը տանեն վոստիկանատուն, վորտեղ ինչքան կուզեն թող յերգեն։ Դրան սպարտակյանները պատասխանեցին.

— Համենայն դեպս այնտեղ բոլորը «կանաչներին»** մենք կը սովորեցնենք „Ինտերնացիոնալ“։ Ցեվ ի պատիվ Գերմանական Կոմկուսի բարձրաձայն „ուռա“ կանչելով շարժվեցինք առաջ։

Այդ րոպեյին հայտնվեցին յերկու վոստիկան, վորոնք ցանկանում եյին խլել դրոշակները։ Բայց «կանաչները» դեռ չեյին անցել գործի, յերբ դրոշակները անհետացան ավելի ապահով տեղ։

Ֆերկզոնում (Բերլինի մոտ), սպարտակյաններից մի ուրիշ խումբ պլակատներով, դրոշակներով կազմակերպել եր ցույց։ Բանվորական թաղում վոստիկանությունը հանդիպելով նրանց ցրեց. բայց խումբը նորից հավաքվեց։ Վոստիկաններից մեկը խլեց դրոշակը. այդ ժամանակ մի փոքրիկ աղջիկ հարձակվեց «կանաչի» վրա, և փախցրեց դրոշակը։ «Կանաչներ»ից մյուսը նույն տեղում խլեց տղայի ձեռից պլակատը և դրեց կռնատակը։ Սպարտակյաններից մեկը փախցրեց պլակատը։

Դուք կարող եք յերևակայել վոստիկանների կատաղությունը։ Կուսակցական ընկերոջը վորը մասնակցում եր ցույցին հարցրին. «Ում յերեխաներն են սրանք» նա բացատրեց, վոր յերեխաներին մենակ տեսնելով փողոցում և վախենալով վոր նրանց հետ, մի վտանգ կը պատահի, միացավ նրանց։

Դուք տեսում եք—հակառակվեց վոստիկանը,—յերեխաները ինձ ավելի լավ կասեն թե դուք ով եք։

Բայց վոստիկանը չարաչար սխալվեց։

— Այս մարդը շարունակ քայլում է մեր հետևից,—վրա բերին յերեխաները,—մեզ ծծմայր հարկավոր չե, թող գնա իր ճանապարհը։

Սպարտակների խումբը շարժվեց առաջ, իսկ ընկերը կանգ առավ, վոր հետո միանա յերթին։

---

* Այդպես են կոչվում Գերմանիայի պիոներները.

**) Այսպես են անվանում Բերլինի վոստիկանությանը։

Մի ուրիշ թաղամասում Սպարտակյանները զինավորեցին բեռնակիր ավտոմոբիլին, որի վրա նստած էյին սոցյալ դեմոկրատները: Նրանք բաց չը թողին ավտոմոբիլը մինչև որ չը յերգեցին ,,Ինտերնացիոնալ‘‘ և, դցելով նրանց իրենց թռուցիկները, ցրվեցին:

Դպրոցներում ևս Սպարտակյանները ուժեղ կռիվ էյին մղում, հետամնաց ուսուցչության դեմ և կազմակերպում դպրոցական բջիջներ:

Գրեք մեզ նամակներ մեր պատանիները բազմաթիվ են: Նրանք ձեզանից շատ բան են ուզում սովորել:

Կոմունիստական բարևներով ՇԻՖԼԵՐ

Բեռլին 627, Անդրիաս Շտրասսե, 40.



N աշխատանքի դպրոցը ուսուցչի ղեկավարությամբ գնաց էկսկուրսիա:

## ԿՈՐԶԻ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԴՊՐՈՑԸ

Այս տարի ձմեռը, Թյուրինգիայում (միջին Գերմանիա) դպրոց հաճախող բանվոր յերեխաների միջև բռնկվեց դասադուլ: Սկզբում Գոտե քաղաքում դասադուլին մասնակցեցին 700 յերեխա: Դասադուլի պատճառն այն եր, որ յերեխաներն այլևս տանել չկարողացան լուսավորության մինիստրին, որը բանվորական լուսավորության գործի ամենավոխերիմ թշնամին եր: Դասադուլի մասնակցողներին պատժելու համար, նա Թյուրինգիայից հեռացրեց բոլոր փոչ տեղացի կոմունիստ ուսուցիչներին իսկ մնացած տեղացի կոմունիստ ուսուցիչներին դատի յենթարկեց:

Յերեխաները չնդունեցին ուղարկած տերտերներին, բուրժուաների վարձկալ նոր ուսուցիչներին, այլ շարունակեցին պահանջել իրենց հին կոմունիստ ուսուցիչներին: Նրանք վորոշեցին դասադուլը շարունակել և մինչև վերջը տանել իրենց պահանջները:

Վոստիկանությունը ցուցակագրեց շատերին և հարցաքննության յենթարկեց 9-10 տարեկան յերեխաներին:

Ամեն որ դասադուլին մասնակցող յերեխաները հավաքվում էյին ժողովրդական տուն և այնտեղ նրանց հետ պարապում էյին պրոլետար ուսուցիչները իսկ կոմսոմոլիստները կազմակերպում էյին նրանց համար յերգեր, խաղեր:

Այդ ամենը փոխարինեց նրանց դպրոցին:

## ,,ԴԱՎԱՃԱՆ ՉԵՄ ԼԻՆԻ‘‘

Անցյալ տարի, յերբ Գերմանիայի արդյունաբերական շրջանները գրավել եին ֆրանսիացիները, սկսվեց գերմանացի յեվ ֆրանսիացի կոմունիստների մասսայական ձերբակալությունը: Բանվոր յերիտասարդները կպցնում էյին պլակատներ և թռուցիկների միջոցով կոչ անում ֆրանսիացի զինվորներին չը կրակել բանվորների վրա այլ միանալ նրանց հետ: Ֆրանսիայի լրտեսներն ու ժանդարմները, կազմակերպված հետապնդում էյին Գերմանիայի, Ֆրանսիայի կոմունիստներին, վորոնք համարձակվել էյին պարզել զինվորներին ճշմարտությունը: Գերմանիայից Ֆրանսիայից, Ավստրիայից, Սերբիայից և Ալժիրից քիչ չէյին կոմսոմոլիստները, վոր զինվորական դատի հանձնվեցին:



Վերջապես հասան նպատակին:

Ամիսներ շարունակ բանտարկյալներին պահում էյին քաղցած և գազանաբար էյին վարվում նրանց հետ։

Վերջերս Մայնց քաղաքում, զինվորական դատի յենթարկեցին բանտարկված կոմունիստներին։ Սպաներից կազմված դատարանը 57 դատվող ընկերներին դատապարտեց 130 տարի բանտարկության։

Բանտարկվածների մեջ եր նաև մեկ կոմսոմոլիստ, վորին բանտ էյին գցել, ֆրանսիական զորքի մեջ ագիտացյա մղելու համար։ Նա կարող ե լավագույն որինակ լինել բոլորիս համար։ Նա 13 տարեկան եր. Նրան բռնել եին Ֆրանսիական լրտեսները և մեղադրում եին Ֆրանսիական զորքի մեջ Թռուցիկներ տարածելու համար։ Բանտում նրա հետ վարվում եին շատ խիստ, վորովհետև չմատնեց իր ընկերներին։

Վերջը նրան Թողեցին, վորովհետև հնարավորություն չեղավ վոչ մի խոսք նրա բերանից դուրս քաշել։

Յերբ սկսվեց բանտարկված կոմսոմոլիստների դատավարությունը, զինվորական դատարանը կանչեց մեր փոքրիկ ընկերոջը վորպես վկա։

Մեղադրական աթոռների վրա նստած եին 57 կոմսոմոլիստներ. վորոնց շրջապատել եին վոստիկանները։ Դատական սեղանի շուրջը նըստած եին հինգ ոֆիցեր, վորպես դատավորներ։

Վորպես վկա առաջ են բերում մեր յերիտասարդ ընկերոջը։ Նախագահը կրկին առաջարկում ե, վոր ասի ինչո՞վ եր զբաղվում յեղբայրը և վորտե՞ղից վերցրեց Թռուցիկները։

Նա համարձակ դատավորին պատասխանում ե։

—Յես դավաճան չեմ լինի, և հայտնում եմ



Ու սրբացած վերատարձան։




Մեղա յինք, Թողություն տուր։

բոլոր լողներին, վոր ինձ բանտում փայտերով ծեծեցին։

Դատավորները կարմրում են։ Այնուհետև դատախազը կարդում ե որենսգրքի համապատասխան կետը։

—Դու առնվազը մեկ տարով կենԹարկվես բանտարկության։

Դատավորները մոտ մեկ ժամ աշխատում են փաղաքշելով, սպառնալով համոզել պատանուն վոր ասի իր ընկերներին։ Բայց նա հաստատուն կրկին պատասխանում ե։

-Յես չեմ դավաճանի իմ ընկերներին։

Դատարանի դահլիճը լիքն եր ունկնդիրներով և ոտար յերկրների Թերթերի ներկայացուցիչներով։ Մեծ տխմարություն կլիներ առանց փաստի դատի յենԹարկել պատանուն և հարկադրված յեղան ազատել։

Ամեն մի պիոներ պետք ե լինի այդպես կայուն ու տոկուն։

## ՊԻՈՆԵՐՆԵ՛Ր

ՇՈՒՏՈՎ ՄՈՏԵՆՈՒՄ Ե

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՊԱՏԱՆԵԿԱՆ ՇԱԲԱԹԸ

ՊԱՏՐԱՍՏՎԵՔ՝ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՆՑԵՔ՝

ԿԱՊ ՀԱՍՏԱՏԵՔ ԱՐԵՎՄՏՅԱՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՀԵՏ՝

ՆԱՄԱԿՆԵՐ ՈՒՂԱՐԿԵՔ ՆՐԱՆՑ, ԾԱՆՈԹԱՑՐԵՔ

ՁԵՐ ԿՈԼԵԿՏԻՎԻ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻ ՀԵՏ

## ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ՅԵՐԵԽԱՆԵՐԸ ՅԵՎ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅԱՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆ

Համաշխարհային պատերազմից սկսած վերջին տասնամյակը խորը հետքեր է թողել բանվոր դասակարգի յերեխաների վրա:

Սովը, ցուրտը և կարիքը — այդ



Սգատ Գերմանիայում

բոլորը առանձնապես անդրադարձել է նրանց վրա:

Այն ժամանակ յերբ բուրժուաների բարեգործական ընկերությունները ապաստարաններ են շինում մոլորված շների համար, հազարավոր բանվորական յերեխաներ բզկված, հնամաշ շորերով, են և կարոտ են մի կտոր հացի:

Ապահովել յերեխաներին ամենից կարևորն է, վորովհետև նրանցից է աճում այն սերունդը, վորը վերջին հարվածը պիտի տա բուրժուազիային և կառուցի նոր կյանք:

Այդպիսի մի կազմակերպություն, վորն հոգում է բանվորների յերեխաներին, հանդիսանում է Բանվորների Միջազգային Օգնության Կազմակերպությունը:

Այս կազմակերպությունը օգնություն հասցրեց Մերձվոլգյան շրջանի յերեխաներին Ռուսաստանի սովի ժամանակ, տեղավորելով նրանց մանկատներում, վորոնք պահվում են ամբողջ աշխարհի բանվորների միջոցներով:

Նա օգնության հասավ Համբուրգի, Գելզերաուի, Խեմնիցի, Բեռլինի, Երենբուրգի (Գերմանիայում) մի քանի շրջանների 10,000 յերեխաներին:

Միջ. բանվ. օգն. կազմակերպությունը հազարից ավել յերեխաներ ուղարկեց Շվեյցարիա, Ֆրանսիա, Հոլլանդիա, Չեխո-Սլովակիա և ուրիշ յերկրներ, ազատելով նրանց սովամահության ճանկերից հայրենի յերկրում:

Նա կազմակերպեց բազմաթիվ մեծ ճաշարաններ, վորտեղ բաժանում եր յերեխաներին տաք կերակուր և այլն: Նա ամեն տեղ է, վորտեղ նրա օգնության կարոտ են բանվորներն ու նրանց յերեխաները:

Արևմուտքի պիոներական կազմակերպություններն ակտիվ կեր-



Հաց ավեք

պով մասնակցում են ՄԲՕԿ-ի գործունեությանը, մասնակցում են քաղաքներում կատարվող հանգանակություններին, օգնում են մանկատներում փոքրիկ յերեխաներին խնամելու և այլն:

ՄԲՕԿ-ի ջանքերով պատանեկական կոմունիստական շարժումը բուրժուական յերկրներում վոչ թե մեռնում է, այլ որ ավուր ամրապնդվում է ու զարգանում:

## «ՄԵՆՔ ՁԵԶ ՀԵՏ ԵՆՔ»

«Պատանի Սպարտակ» միության կենտրոնական կոմիտեյի պլենումի նիստը Բեռլինում, ուղարկել է ՍԽՀՄ-ի պատանի պիոներներին վողջույնի նամակ, վորի մեջ շնորհավորում է պատանի պիոներներին ՍԽՀՄ-ի պիոներների թիվը միլիոնից անցնելու առթիվ: «Մենք ձեզ հետ ենք — ասվում է նամակի մեջ. Մենք, կոմունիզմի պատանի պիոներներս, Գերմանիայում միացանք «Պատանի Սպարտակ» միության դրոշի տակ, վորպեսզի բանվոր դասակարգի յերեխաներին տանենք ազատագրական պայքարի ուղիով և դրավենք կոմունիզմը:

Մենք խոստանում ենք արժանի լինել այն անվանը, վոր մենք կրում ենք և Կարլ Լիբկնեխտի ու Ռոզա Լյուքսեմբուրգի նման նվիրել մեր կյանքն այդ պայքարին:

Մենք խոստանում ենք ձեռք-ձեռքի տված գնալ կոմունիստական յերիտասարդության հետ և պահպանել պրոլետարական ամենախիստ կարգապահությունը:

Մենք խոստանում ենք կռվել ու աշխատել Լենինի վոգով և նրա ավանդներով, վորպեսզի ամենակարճ ժամանակամիջոցում իրականացնենք պրոլետարական հեղափոխությունը Գերմանիայում»:



Ոճրագործ

## ՊԱՏԱՆԵԿԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԽՄԲԵՐ ՀՈԼԼԱՆԴԱԿԱՆ ՀՆԴԿԱՍՏԱՆՈՒՄ

Հոլլանդական Հնդկաստանը գտնվում է Հնդկական Օվկիանոսում և բաղկացած է մի քանի մեծ ու փոքր կղզիներից։ Նա պատկանում է Հոլլանդիային և Հոլլանդիայի բուրժուազիան ճնշում է տեղացի, բոլորովին իրավազուրկ ազգաբնակությանը։

Վերջին ժամանակներս այնտեղ կազմակերպվել է ուժեղ կոմունիստական կուսակցություն և նա հանդես յեկավ բանվորներին պաշտպանելու ու պայքարելու տեղական բուրժուազիայի դեմ։

Հոլլանդական Հնդկաստանում կան նաև պատանեկ. կոմունիստական խմբեր, վորոնք կազմակերպվել են 1921 թվին, շատ կա նրանցից մանավանդ Յավա կղզու վրա։ Նրանց շարքերում կան ընդամենը 1000 յերեխաներ, մեծ մասամբ տեղացիներից։

Առաջ յեկան այդ խմբերը կոմունիստ-ուսուցիչների ղեկավարությամբ կրոնի դեմ կռվելու համար։

Վերջերս կառավարությունն անհանգստանալով հետզհետե ուժեղացող պատանեկական շարժումից, սկսում է նրան հետապնդել։

Այսպես, որինակ, Սամարանչա շրջանում դպրոցական տեսչի կողմից ընդհանուր քննություն անելու ժամանակ շատ դպրոցներում աշակերտներն ինտերնացիոնալ և ուրիշ հեղափոխական յերգեր եյին յերգում։ Դրա համար Սամարանչայի նահանգապետը հրահանգեց մոտակա 2 տարիների ընթացքում նոր դպրոցներ բաց չանել, իսկ հին դըպրոցներում, արմատախիլ անել կոմունիզմը։

Բացի դրանից Հոլլանդիայի դաղութային մինիստրությունը, կարգադրել է արգելել ուսուցիչներին խոսել այնպիսի անցքերի մասին, վորոնք աշակերտների անբավականություն ու բողոք առաջ կբերեն։ Բոլոր այն ուսուցիչները, վորոնք չեն կատարի այդ կարգադրությունը կհեռացվեն պաշտոններից։

Պատանեկ. կոմ. խմբերն ուժեղ պայքար են մղում հետադիմական ուսուցչության դեմ, ագիտացիա յեն անում նոր, կոմունիստական դպրոցի օգտին, և հաճախ նրանց ղեկավարությամբ դասադուլներ են հայտարարում։

Չը նայած կուսակցության հետապնդումներին, իրենց չի հաջողվում կասեցնել պատանեկ. կոմ. շարժումը հոլլանդական Հնդկաստանում։ Նա պետք է աճի ու պայքարի մինչև հաղթանակը։

## ՎՈՆՑ ՉԸ ԳՈՎԵՄ

Ե. Խալե

Վոնց չը գովեմ,
վոնց չը խոսեմ,
իմ աչքի լույս,
գյուղացու հույս,
Շիր-ջրանցքը…

Հազար տարով,
հազար ցավով,
յեկար հասար.
բարով, բարով,
Շիր-ջրանցքը։

Կծղած արտիս,
ցավոտ սրտիս,
բյուր կարիքիս,
դեղ ու դարման՝
Շիր-ջրանցքը։

Առաջներում
գյուղում տեր եր,
ագիտություն ու տերտեր.
դու հո գիտես,
նոր լույս սփռող
Շիր-ջրանցքը։

Յերաշտ տարին
իմ կշռանքով
մոմ եմ վառել սածուն
բայց նա սուտ եր,
մի կեղծիք եր,
Շի՛ր-ջրանցքը…։

Հիմա դո՛ւ յես,
զորավո՛ր ես.
քեզ հետ մի տեղ,
քեզ հետ ենտեղ,
քրտինք թափեմ
Շիր-ջրանցքը։



Ես մի անգամը ներկելի յե



Նման ուսուցիչներ մեզ պետք չեն

ԳԵՐԿԱՆ

# ՊԱՀՊԱՆԻՐ ԱՌՈՂՋՈՒԹՅՈՒՆԴ

*Ֆիզիքական պատրաստականություն պահանջվում է մանավանդ ամառը—էքսկուրսիաների ընթացքում բանակային կյանքում։*

*Ինչումն են կայանում այդ պարապմունքները։ Հարկավոր է ամենից առաջ օրգանիզմը զգույշ ու աստիճանաբար ամրապնդել։ Հարկավոր է մաշկը սովորեցնել ցրտին և ջերմության տատանումներին։ Բանակում հաճախ իրիկնապահին մառախուղ է լինում, իսկ գիշերը մանավանդ լուսադեմին բավական ցուրտ է լինում։ Էքսկուրսիաների ժամանակ տղերքը հաճախ մնում են անձրևի տակ, իսկ փոխել թաց, մարմինը սառեցնող շորերն ու սպիտակեղենը միշտ չի հաջողվում։*



*Օրգանիզմի ամրապնդումը պիտի սկսել կարճատև օդային վաննաներից սենյակում։ Դրա համար բավական է առավոտյան վերմակը դեն գցել և մերկ պառկել մի քանի րոպե։ Ավելի լավ է ման գալ սենյակում, իսկ յեթե ցուրտ է զգացվում, պետք է պինդ-պինդ տրորել մաշկը ձեռքերով։ Օգտակար է առավոտյան այդ վաննաներին միացնել նաև մարմնամարզություն։ Բայց յերբեք հարկավոր չէ մինչև մրսելը մնալ։ Հարկավոր է սենյակում օդափոխություն անել, սակայն մեկ մարմնով այդ սառը հոսանքի դեմ չպետք է կանգնել։*

*Սրա հետ միասին օգտակար է կատարել մի վարժություն, որը լավ կ՚զարգացնի շնչառությունը և կոփի ջրավախության դեմ կռվելուն։ Վերջինն անհրաժեշտ է, որովհետև պիոներին շատ հաճախ կարիք է լինում գետի միջով անցնել (հաճախ մինչև ծնկները), իսկ բանակային կյանքը, անկասկած, կապված է լողանալու հետ։*

*Այս վարժությունը կայանում է նրանում, որ վերցնում են մաքուր ջուր, այնուհետև ներշնչում են թոքերի մեջ ըստ հնարավորության շատ օդ և յերեսը ջրի մեջ ընկղմելով արտաշնչում են օդը բերանից կամ ավելի լավ է քթից։ Աչքերն այդ ժամանակ չըպետք է փակել։ Յերբ արտաշնչելը վերջացնում են, հանում են յերեսը ջրի միջից։ Այս վարժությունը կարելի յե կրկնել մի քանի անգամ։*

## ՇՆՋԱՌՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄ

*Սրանց հետ միասին օգտակար կը լինեն, իհարկե, շնչառության նաև ուրիշ վարժություններ, որոնք սովորաբար կատարում են առավոտյան մարզանքների ժամանակ։ Դրանց հետ յերևի, դուք լավ ծանոթ եք, այդ պատճառով դրա մասին այստեղ չեմ խոսի։ Հարկավոր է հիշել միայն հետևյալը, որը պետք է ներշնչել քըթով, օգտվել մաքուր և թարմ օդով, մարզանքների ժամանակ պիտի աշխատել ինչքան կարելի յե խոր և ազատ շունչ քաշել, ներս քաշելով օդը գլխավորապես թոքերի ներքևի մասերով. այդ ժամանակ փորը մի քիչ լայնանում է։ Հարկավոր է լուրջ ուշադրություն դարձնել արտաշնչելու վրա. պետք է աշխատել արտաշնչել թոքերում մնացած ու փչացած ամբողջ օդը մինչև վերջ։*

*Լավ շնչառությունից է կախված սրտի կանոնավոր աշխատանքը։ Ում շունչը շուտ է կտրվում, ով հևում է, նա չի կարող վազել, արագ քայլել, լավ աշխատել, նա չի կարող, հետևապես մասնակցել բանակային աշխատանքներին, հեռավոր էքսկուրսիաներին և կոլլեկտիվ խաղերին։*

*Շնչառության զարգացումն ու վոտքերի ամրապնդումը (ապագա ամառային էքսկուրսիաների համար) պետք է միասին կատարվեն։ Քանի դեռ գետինը չի չորացել կարելի յե թռիչքի վարժություններ կատարել պարանով։ Դա շատ լավ վարժություն է և դրանով օգտվում են մինչև անգամ հասակավոր սպորտսմենները, բոքսյորները, վազողները, թռչողները, լողվորդները, փորպեսզի զարգացնեն վոտքերի ուժն ու դիմացկանությունը և ինչպես իրանք ասում են «շնչառությունը բաց անելու» համար։ Այդ նպատակին կարող է ծառայել վորևե հաստ պարան։ Կարելի յե մտածել մի շարք ձևերի թռիչքներ—վոտքերը փոխելով, յերկու վոտքի վրա, պարանն առաջ, հետ պտտեցնելով*

և այլն։ Փորձեցեք միայն և դուք կը տեսնեք թե ինչքան հետաքրքիր վարժություն է դա և ինչպես լավ է ազդում նա օրգանիզմի վրա։ Սկզբում կարող է անշնորհք դուրս գալ, բայց հետո ավելի ճկուն, ճարպիկ և փափուկ շարժումներ կը զարգանան, իսկ թռիչքների քանակը քանի գնա կավելանա։

Դա ցույց կը տա, վոր մարմինը ձգվեց և ավելի դիմացկուն դարձավ։

## ՔԱՅԼԵԼԸ

Քայլելը ամենից շատ պետք է գալիս ամառը։ Բայց դրանից նա ես շատ լավ է ազդում թոքերի վրա։ Պետք է ամբողջ ողակով կամ կոլլեկտիվով զբոսանքներ կազմակերպել։ Դեռ ցուրտ է, դաշտերում յերբեմն դեռ մնացած է լինում ձյունը և այսպիսի զբոսանքը վոչ միայն հնարավոր է, այլ և օգտակար է։ Քայլում են արագ, հավասարաչափ։

Շնչել հանդարտ ու խորը։

Րոպեն մի անգամ հանդարտ ու դանդաղ քայլ, վորը շարունակում են մինչև շնչառությունը բոլորովին հանդարտվի։ Դրանից հետո նորից արագացնում և այլն։ Մեկ-յերկու կիլոմետրից ավել այդպիսով սկզբում չպետք է քայլել։

Անհրաժեշտ է թռիչքների յել վարժվել, օրինակ՝ ցածր թփի վրայից, առվի մի ափից մյուսը թե տեղից և թե ուժ առած։ Սա բազմատեսակություն է մտցնում զբոսանքի մեջ և ամրապնդում վոտքերն ու գոտատեղին։ Սրանց կարելի յե միացնել թեք բլուրների վրա բարձրանալը, բարձր ցանկապատից անցնելը, ծառերին մագլցելը։ Այս վարժությունները չափազանց անհրաժեշտ են ինչպես բանակային կյանքի համար, նույնպես և հրդեհների ժամանակ օգնության հասնելիս։ Ավելի լավ է, յեթե այդ վարժությունները կոլլեկտիվ կերպով են կատարվում, այսինքն յեթե մի պիոներ մյուսին օգնում է օրինակ՝ ուսը դեմ անելով կամ այլ կերպ։ Այդ վարժությունների ժամանակ ամրանում են մանավանդ ձեռքերը և մարմնակազմը։

Յերբ 3—4 կիլոմետր արագ քայլելը արդեն վոչ մի դժվարություն չի ներկայացնում, կարելի յե դիմել վազքի։ Սկզբում վազքն ել մեջ ընդ մեջ փոխարինում են քայլով, օրինակ. $^{1}/_{2}$ րոպե վազք, 1 րոպե քայլ։ Սկզբում 1 կիլոմետրից ավել չպետք է վազել։ Վազել պետք է կանոնավոր, վոտքը փափուկ խփել, ամբողջ թաթով, և վոտքի քիթն առաջ պահելով, չըթռչկոտել և կողքի-կողքի չնկնել։ Ձեռքերը կիսածալած և առանց



# ՊԻՈՆԵՐ

## ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԿՈԳՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ

Նորվեգիայում—կուսակցության համագումարում մեծ տպավորություն թողեց բոլոր պատգամավորների վրա պիոներ-դելեգացիայի հանդես գալը, վորոնք դիմեցին համագումարին խընդրելով պաշտպանել դպրոցական պիոներ-բջիջներին հետապնդումներից։

## ԳՆԴԱԿԱՀԱՐՈՒՄ ԵՆ ՉԻՆԱՑԻ ՅԵՐԵԽԱՆԵՐԻՆ

Հունիսի 8-ին, անգլիական վոստիկանությունը Շանհայում գնդակահարեց 8 տարեկան չինացի մի յերեխայի յեվ շատ յերեխաների վիրավորեց, նրա համար, վոր այդ յերեխաները քար եյին նետում տրամվայի այն վագոնի մեջ, վորտեղ նստած եյին վոստիկանները։

## ԲԱՆՏԻ ՏԱՐԻՆԵՐԸ

Մի քանի օր առաջ Չեխո-Սլովակիայում դատում եյին մի խումբ «կարմիր սկաուտներ», վորոնք, իբր թե ցանկանում եյին կործանել գոյություն ունեցող իրավակարգը յեվ հաստատել իրենց յերկրում խորհրդային իշխանություն։

Դատարանը վորոշեց, 2 հոգուն մեկ տարի, իսկ 9 հոգուն 5 ամիս—բանտարկության։ Սա համարյա առաջին դեպքն է, յերբ յերեխաներին բանտ են նստեցնում։

## ՊԻՈՆԵՐՆԵՐԸ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ

Անգլիայում.—Մայիսի 30-ին բացվեց կոմունիստական կուսակցության համագումարը։ Այդ համագումարին առաջին անգամ վողջունեց պիոներների պատվիրակությունը, վորը ներս մտավ իր դրոշակով, թմբուկով յեվ յերգելով—«Անվախ ընկերներ, դիմենք առաջ»։ Պիոներները պլակատ եյին կրում իրենց հետ, վորի մի կողմում գրած եր վողջույնի խոսք համագումարին, իսկ մյուս կողմում—«Կեցցե լենինիզմը»։

12 տարեկան մի պիոներ հայտարարեց, վոր տեղական իշխանությունների կողմից արգիլված է պիոներական ցույց, բայց այդ արգելքը նրանց ավելի յե ուժ տալիս.

Մի աղջիկ պիոներ խնդրեց համագումարին բողոքել այն բանի դեմ, վոր պիոներներին արգիլում եյին փողոցի ցույցերին մասնակցել, իսկ բոյսկաուտներին թույլատրում են։

կրծքին կպցնելու, նրանք պետք է ազատ շարժվեն մարմնի կողքերով վազքի ուղղությամբ։ Կարևոր է քայլերի քանակը համաչափեցնել շնչառության հետ, օրինակ, 3 քայլի վրա ներշնչում, 2 քայլի վրա ավելի ուժեղ արտաշնչում։ Այս մեկը, սակայն, կախում ունի կանոնավոր շնչելու սովորությունից և ամեն մեկի կրծքի վանդակի ծավալից։ Գլխավորը—մշակել դիմացկանություն, որն անհրաժեշտ է բոլոր մեծ անդափոխությունների, ինչպես և բանակային խաղերի ժամանակ ամառվա ընթացքում։ Վազքի արագությունը ինքն ըստ ինքյան կուժեղանա, երբ կամրապնդվի օրգանիզմը, կը կանոնավորվի շնչառությունը կը կազմակերպվեն թեթև խաղեր վազքի հետ միասին և խաստաֆետներ։

---

# -ԼՐԱԳԻՐ



### ՀԵՏԱՊՆԴՈՒՄՆԵՐԸ ՀԵՌԱՎՈՐ ԱՐԵՎԵԼՔՈՒՄ ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ ԵՆ

Չինական վոստիկանությունը Խարբինում, արգելել է Պիոներներին մակույկով Սունգարի գետի մի ափից մյուսը անցնելու յեվ ցրում է նրանց հավաքույթները։

Ցիցիկարում փակվեց շրջկոմը, նախագահն ու քարտուղարը ձերբակալված են։ Լենինի յեվ Կալինինի պատկերները պատառոտել են յեվ շրջկոմի գործերի հետ միասին տարվել վոստիկանատուն։

---

### ՅԵՐԵԽԱՆԵՐԻ ՉԱՐՉԱՐԱՆՔԸ

Հունվարի 24-ին, Շտուտգարտ քաղաքում, դատվում եր Հերդրուդա Մինկը, վորը մեղադրվում եր կոմունիստական պրոպագանդայի յեվ «Հայրենիքին» վտանգավոր բաներ տարածելու մեջ։ Հուլիսի 8-ին, փողոցում բռնվեցին յերկու աղջիկ մեկը 7, մյուսը 8 տարեկան, վորոնք Մոպրի մարկաներ եյին ծախում։ Բռնված յերեխաներն ուղարկվեցին վոստիկանատուն, վորտեղ նրանց ծեծեցին ու չարչարեցին ելեքտրականությամբ, վորով վոստիկանությունը ստիպեց նրանց ստորագրել մի արձանագրություն, վորի մեջ ասվում է, թե այդ մարկաները տվել է նրանց Հերդրուդա Մինկը։ Մի քանի ամիս բանտում պահելուց հետո Հերդրուդա Մինկին արձակեցին, վորովհետեվ պարզվեց վոստիկանության պրովոկացիան։

---

### ՈՒՐԱԽՈՒԹՅԱՆ ՑՈՒՅՑ

Մարտի 16-ին, Սիլեզի կայարանում, դիմավորում եյին Ֆրանսիայից վերադարձող Գերման բանվորների յերեխաներին, վորոնք ուղարկվել եյին այնտեղ Մ. Բ. Ո. Կ-ի կողմից կազդուրվելու։ Նրանց գալու լուրը այդ օր, յերեկոյան ժամի 10-ին, կայարանում հավաքվեց պրոլետարների ահագին բազմություն մի քանի հազար հոգուց, վորոնք ցանկանում եյին դիմավորել վերադարձողներին։

Յերբ արագնթաց գնացքը մտավ կայարան, հազարավոր ձայներ վողջունում եյին յերեխաներին։ Վերադարձողներից մի տղա ճառ արտասանեց, կոչ անելով իր փոքրիկ ընկերներին, մտնել պրոլետար յերեխաների գործի համար պայքարողների շարքերը։

---

## ՈՂԱԿԻ ՈՐԱԳՐԻ ՄԱՍԻՆ

Մեր ողակներից շատերն արդեն ըսկսել են ողակային որագիր պահել, վորտեղ գրում են ողակի աշխատանքների մասին։

Բայց պետք է հենց ետտեղ ել ասենք, վոր որագիրը համարյա միշտ սխալ է տարվում։

Ի՞նչ են գրում մեջը։

Միայն նրա մասին, վոր «ես որվա ֆրգիքական կամ մտավորական պարապմունքին ներկա յեր եսքան պիոներ» և ուրիշ վոչինչ։

Դա միանգամայն սխալ ձև ե։

Ողակային որագիր դա ողակի աշխատանքների հայելին ե։

Նա հայելու նման ցույց պիտի տա մեր աշխատանքների բոլոր մանրամասնությունները, ողակի գործունեյության լավ կամ վատ կողմերը։

Ո՞վ ե գրում որագիրը։

Որագիրը գրում են ողակի անդամները հերթով։ Շատ սխալ ե յեթե որագիրը գրում ե միայն ողակավարը, կամ նրա օգնականը։

Ի՞նչպես գրել ողակի հավաքույթի մասին։

Հավաքույթի մասին պիտի գրել հետևյալը՝

1. Թիվը, օրը, ամիսը, տարին, ժամը,

2. Ի՞նչ եր մտածված անելու հավաքույթին,

3. Ի՞նչ արեցին այդ ծրագրից,

4. Ի՞նչքան պիոներ եր ներկա,

5. Ի՞նչպես եյին վերաբերվում դեպի հավաքույթը,

6. Զրույցի բովանդակությունը

7 Ո՞ր հարցն եր բոլորից շատ հետաքրքրում ողերանց։

8 Ելի ինչ արեցիք հավաքույթի ժամանակ։

9. Քո կարծիքը հավաքույթի մասին։

Բացի ողակի հավաքույթներից պետք ե գրել անպայման ընդհանրապես ողակի կյանքի մասին։

Նրա մասնակցությունը հասարակական-պրակտիկ աշխատանքներին, կամպանյաներին, տոներին և այլն։ Որագիրը գրվում ե հաստ տետրի մեջ, լինում ե պատկերազարդված, նկարներով և այլն։

---

# ՊԱՏՐԱՍՏՎԵՆՔ ԱՄԱՌՎԱՆ

Մոտ օրերս, մի կոլլեկտիվի խորհրդում քննվում էր ամառվան համար պատրաստվելու հարցը:

Յերկար վիճում եյին, քիչ էր մընում իրար հայհոյեյին, բայց համենայն դեպս յեկան մի կարծիքի, միենույն յեզրակացության:

Ամենից առաջ վիճում եյին, թե պետք է բանակային աշխատանքների համա՞ր պատրաստվել թե ամբողջ ամառվա աշխատանքների նախապատրաստություններ տեսնել:

Մի քանիսն ասում եյին. «բանակային աշխատանքներն ամառվա աշխատանքներից ամենագլխավորն է, նրա համար պատրաստվելուց է կախված ամբողջ ամառվա աշխատանքը».

Մյուսները պատասխանում եյին. «բանակը 3 շաբաթ է տևելու, իսկ ամառը 5 ամիս է. և հետո օրինակ 30-րդ կոլլեկտիվը բանակի համար միջոցներ չունի. ուրեմն նրանց համար ամբողջ ամառը կորչելու՞ յէ: Վոչ, հարկավոր է պատրաստվել ամբողջ ամառվա աշխատանքների համար, իսկ այդ պատրաստությունը միենույն ժամանակ բանակի համար էլ կը ծառայի»:

Այսպես էլ վորոշեցին: Սկսեցին խորհրդակցել թե ինչպես պատրաստվեն ամառվա համար:

Այստեղ էլ սկսեցին խոսել, թե «ինչպես աշխատենք. յերբ մեզ միջոցներ չեն տալիս, յերբ մենք ֆուտբոլ չունենք, ֆորմա չունենք»

Սակայն, ավելի լուրջ տղերքը մոլորվածներին կանգնեցրին. «ինչու՞ յեք իզուր տեղը բղավում: Միթե ամառային աշխատանքները կայանում են միայն ֆուտբոլ խաղալու և ֆորմա հագնելու մեջ: Միթե՞ փոքր յերեխաներին կարելի յէ ֆուտբոլ խաղալ: Ինչի համար միջոցներ են պետք և այլն:

## ՀԱՊԱ ՎՈՐՈՆՔ ԵՆ ՄԵՐ ՀԻՄՆԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Սկսեցին լուրջ կերպով քննել, թե ինչումն է կայանում ամառային աշխատանքների էությունը, և գրեցին արձանագրության մեջ հետևյալը․

1. Քաղաքի կոլլեկտիվի ամառային աշխատանքների հիմնական խնդիրներ, համարել:

ա) Պիոների առողջացումը մաքուր օդում պարապելու, խաղերի միջոցով, կանոնավոր ֆիզկուլտուրականությամբ և առողջապահական ուրիշ կանոններ կատարելով:

բ) Կազմակերպել Պիոներների շուրջը անկազմակերպ ու անտպաստան յերեխաներին, փողոցներում, հրապա-



րակներում, պիոներական և բանվորների ակումբների շուրջը:

գ) Աջակցել գյուղերի պիոներներին և հասակավոր գյուղացիներին, գյուղը կանոնավոր կերպով այցելելով, գըրականություն ուղարկելով, գյուղ գընալով՝ դաշտային աշխատանքներին օգնելու համար, և վերջապես 1-3 շաբաթյա կամ միամսյա բանակ կազմակերպելով, յեթե այդ հնարավոր է:

դ) Միասին աշխատել ամառային դպրոցի հետ, բնությունն ու շրջակայքը ուսումնասիրելու գործում:

2. Այս աշխատանքները կատարելու համար, պատրաստություններ տեսնել ողակում, կոլլեկտիվում կոլխորհրդում:

## ԻՆՉՊԵՍ ՊԱՏՐԱՍՏՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՏԵՍՆԵԼ ՈՂԱԿՈՒՄ

3. Ողակի պատրաստությունները կայանում են հետևյալում.

ա) Պետք է յուրաքանչյուր պիոների հանձնարարել, վորպեսզի նա պարզի թե իրենց բակում ինչքան չկազմակերպված յերեխաներ կան, ինչ հասակի են նրանք, ինչով են զբաղված ամբողջ օրը, ինչ է նրանց հատկապես դուր գալիս, ինչ են մտածում նրանք ամառվա ընթացքում անել:

բ) Հետո ողակում պետք է քննվի, թե ինչպես անցկացրին պիոներները անցյալ ամառ, ինչ լավ ու վատ բաներ կային այն ժամանակ, և ինչ կուզեյին անցկացնել այս տարի:

գ) Պետք է քննվի, թե ինչպես է ավելի լավ տանել այդ ամառային աշխատանքներն ա՞նկազմակերպ յերեխաների հետ:

Այսինքն աշխատանքը նրանց մեջ տարվելու յէ մի պիոների, թե ողակի կամ ամբողջ կոլլեկտիվի կողմից:

դ) Լավ մտածել, թե ինչպիսի հասարակական աշխատանք կարելի յէ կատարել իր շրջանում (մոտակա այգում իրենց բակում, բանվորական ակումբի բակում):

ե) Պատրաստվել ողակում առաջիկա գրուպաների, եքսկուրսիաների համար, խորհրդակցել թե ինչպես այդ գրուպաներն ու եքսկուրսիաները օգտագործել, բնությունն ուսումնասիրելու համար, և վերջապես ինչ իրեր են հարկավոր յուրաքանչյուր պիոներին և ամբողջ ողակին ամառվա աշխատանքների համար (բահեր, ամաններ. կացիններ և այլն) և ինչպես ճարել այդ առարկաները:

## ԻՆՉՊԵՍ ՊԵՏՔ Ե ՊԱՏՐԱՍՏՎԻ ԿՈԼԼԵԿՏԻՎԸ

4. Կոլլեկտիվի նախապատրաստությունները կայանում են հետևյալում.

ա) Կոլլեկտիվը պետք է վորոշի թե իր մասսայական աշխատանքներով վոր թաղին, փողոցին, մանկական հիմնարկությունը, կազմակերպությունն է ծառայելու:

բ) ամբողջ կոլլեկտիվը հավաքույթներ պիտի կազմակերպի բաց օդում, ֆիզկուլտուրայի հրապարակներում, այգիներում, առաջուց տեղեկացնելով շրջապատող յերեխաներին, գրավելով նրանց իր զբաղմունքների մեջ:

գ) Բացի դրանից պետք է ձեռնարկել լուրջ ոգտակար աշխատանքի իր շըրջանում (բանջարանոց կազմակերպել, մի նոր այգի տնկել, խաղի հրապարակ կառուցել, ճանապարհներ ուղղել բանվորական ավանում և այլն):

դ) Միաժամանակ կոլեկտիվը պետք է մշակի եքսկուրսիայի աշխատանքների ծրագիր (ուր գնալ, ամիսը քանի անգամ, ինչ նպատակով և այլն) և պայմանավորել դպրոցի հետ, վորպեսզի այդ աշխատանքները համաձայնեցվեն և տարվեն ընդհանուր ուժերով:

ե) Կոլեկտիվը պետք է վորոշի նաև թե ինչպես ոգտագործի լույսը, օդը և ջուրը, ֆիզկուլտուրայի և առողջապահական նպատակներով և ամառային աշխատանքներից առաջ պետք է կազմակերպի բոլոր պիոներների համար բժշկական քննություն:

## ԻՆՉՊԵՍ ՊԵՏՔ Ե ՊԱՏՐԱՍՏՎԻ ԿՈԼ. ԽՈՐՀՈՒՐԴԸ

5. Կոլ. խորհրդի պատրաստությունները կայանում են հետևյալում:

ա) պատրաստման աշխատանքների կանոնավոր բաշխում կատարել ոգակների և խորհրդի անդամների միջև, նըշանակելով յուրաքանչյուր աշխատանքի համար վորոշ ժամանակամիջոցներ (յուրաքանչյուր շաբաթվա համար առանձին):

բ) Կապ հաստատել բոլոր այն հաստատությունների հետ, վորոնք կարող են ոգնել ամառային աշխատանքներին (գործարանների վարչությունների, Առբաժնի, ֆիզկուլտխորհրդի և այլնի հետ) և անցկացնել իր աշխատանքների ծրագիրը Լ. Կ. Յե. Մ-յան և կուսբջիջների միջոցով.

գ) Վորոշել, թե ինչ քանակությամբ յերեխաներ կարող են բանակ գնալ, ինչ միջոցներ են հարկավոր դրա համար, վոր գյուղը կարելի յե գնալ, ինչ պետք է անել դրա համար:

դ) Նշանակել հատուկ ընկերներ վորոնք բանակի պատրաստման բոլոր գործնական աշխատանքները կըկատարեն և ընթացք կտան բոլոր խընդիրներին համապատասխան կազմակերպություններում ու հաստատություններում»:

Այնուհետև ոգերքը ընտրեցին 3 հոգու, վորոնք խոստացան կոլվարի հետ միասին ներկայացնել ամբողջ նախապատրաստական աշխատանքների մանրամասն ծրագիր: **Վ. Զ.**

# ԸՆԿ. ԶԻՆՈՎՅԵՎԸ ՊԻՈՆԵՐ. ՇԱՐԺՄԱՆ ՄԱՍԻՆ

Յերբ ինձ հարցնեն, թե վերջին տարիներում ինչ է ամենից նոր ու հետաքրքիր, մասսայական շարժման տեսակետից, ծնվել մեր յերկրում, յես կասեմ. դա պատանի պիոներների շարժումն է:

Պատանեկան շարժումը սկսվում է տարածվել մյուս յերկրներում յեվս, այնտեղ, վորտեղ իշխանության գլուխ կանգնած է բուրժուազյան:

Մենք գիտենք մի զարմանալի օրինակ Իտալիայի կյանքից: Մենք կարդացինք այդ իտալացի ընկեր Ռերսիի գրքույկում: Ֆաշիստական ռեակցիայի ամենայեռուն ժամանակը պիոներ—Լենինյանների խումբը իրեն շարքերում ուներ 10,000 անդամ, «Պրոլետարական մանուկ» թերթի տիրաժը հասնում եր 40,000-ի: Պիոներները ոգնեցին մեզ քաղաքացիական կռվի ծանր տարիներում: Յերբ վոստիկանները մտնում եյին, պիոներները պահում եյին մեր ատրճանակները իրենց գրպանում յեվ վոստիկանությունը վոչինչ չեր գտնում: Խուզարկություններից հետո գալիս եյին ֆաշիստները, կարծելով թե մենք զինաթափված ենք, բայց մեր ընկերները, վորոնք հսկում եյին մեզ փողոցում, զգուշացնում եյին մեզ խրախուսող բացականչություններով «Նրանք գալիս են, ընկերներ, համարձակ յեղեք:» Ահա ընկերներ առաջավոր յերկրներից մեկի կյանքից մի կտոր:

Թուրինում մի որվա մեջ գնդակահարվեցին մի քանի տասնյակ յերիտասարդ բանվորների ղեկավարներից: Այս ցնցող դեպքերը դաստիարակում յեվ ուսանում են:

Մեզ մոտ դուրս են գալիս կարմիր փողկապներով պատանիների մեծ բազմություն, բայց դա չի վորոշում գործը: Կոմունիստական պատանեկական լայն շարժման մեջ մենք պետք է պարզ տեսնենք համաշխարհային հեղափոխության արտացոլումը, ամբողջ աշխարհում անող պրոլետարական հեղափոխության անխուսափելի բաղադրիչ մասնիկը:

Ահա ինչու Կ. Յ. Ինտերնացիոնալին անհրաժեշտ է շատ լուրջ վերաբերվել այդ շարժմանը: Մեր դաստիարակը իր աշխատանքը կատարում է վոչ թե մի քանի ամսվա կամ տարվա համար: Պրոլետարյատը—յերիտասարդ զարգացող դասակարգ է, վորին պատկանում է ամբողջ ապագան:

Կանցնեն մի շարք տարիներ յեվ դուք, դուցե, կը տեսնեք հաղթանակը, ինքներդ կը նվաճեք նրա պտուղները, բայց վորպեսզի այդ հաղթանակը մոտենա, մենք պետք է տիրապետենք բանվորա-գյուղացիական յերիտասարդության հետագա սերունդներին:

# ՊԱՏԿՈՐՆԵՐԻՆ

**Պ. Մելքոնյանին.**— *Եդ հարցով դիմիր Դավբյու-բոյիդ. չի տպվի:*

**Յեռինտին.**— *Քանի անգամ ասել ենք վոր գրես փաստերով... Իսկ դու չես անում: «Եկսկուրսիան ու նրա նշանակությունը» չի տպվի:*

**Վարդգեսին.**— *«Հոկտեմբերիկները» չի տպվի դըրիր կոնկրետ:*

**Յե. Գեորգյանին.**— *«Մի թերություն ես» չի տպվի, գրիր քո կոլեկտիվի թերի կողմերի մասին:*

**Դիլիջան Լեկազին.**— *«Հարկավոր է ուսումնասիրել» հոդվածդ չի տպվի: Կենտրոնական բյուրոյի հրահանգիչը իր գործը քեզանից մի քիչ լավ գիտի: Ինչու յես հիմարություններ գըրում:*

**Նազուշին.**— *«Դեպի գյուղ» նյութը չի տպվի, ընդհանուր է: Անպայման գրիր «Պիոներ»-ին:*

**Վ. Դերմոյանին.**— *Մի թե պիոներական աշխատանքը միայն յերեկույթներ են: Գրիր ձեր կոլեկտիվի մյուս աշխատանքների մասին,—կտպենք:*

**Իջևան Նիմին.**— *Թղթակցիր «Պիոներ»-ին.*

**Բաղդամյանին.**— *Թղթակցությունդ «Սմիչկա» կոլեկտիվի մասին գրել ես արձանագրության ձևով և հետաքրքիր վոչինչ չես ասում: Չի տպվի:*

**Սոգյուբլի Պ. Մխիթարյանին.** *Նյութիդ մեջ վոչինչ չկա: Բացի դրանից պիոներական կոլեկտիվները չեն կոչվում «Պարսամ Մխիթարյանի», «Սմբատ Հովհաննիսյանի» անվամբ: Կոլեկտիվները կոչվում են հեղափոխական դեպքերի և ղեկավարների անուններով:*



# ՖՈՐԴԻ ԱՎՏՈՄՈԲԻԼԻ ԳՈՐԾԱՐԱՆԸ



Ամերիկայում կա մի նշանավոր գործարան, վորն իր սարքով ու աշխատելու ձևով ամբողջ աշխարհում հայտնի յե դառել: Դա խոշոր կապիտալիստ Ֆորդի ավտոմոբիլի գործարանն ե:

Ֆորդը կարողացել ե գործն այնպես դնել, վոր նրա բանվորները ոգտագործում են իրենց բանվորական ուժն առավելագույն արտադրողականությամբ: Դրա շնորհիվ գործարանից դուրս ե գալիս օրական 4000 պատրաստի ավտոմոբիլներ:

Մեզ մոտ այժմ գործարաններում պայքարում են աշխատանքի արտադրողականության բարձրացման համար: Այդ պատճառով շատ հետաքրքիր կլինի ծանոթանալ թե ինչպես ե Ֆորդի գործարանում աշխատանքը դասավորված:

Նա նկատեց, վոր 9 ժամվա բանվորական օրից 4-ը կորչում ե անհրաժեշտ նյութերը տեղից տեղ փոխադրելու, գազգյաններին դասավորելու և աշխատանքը վերջացնելուց հետո մյուսին հանձնելու վրա:

Իհարկե դա բոլորովին ձեռնտու չեր և Ֆորդը վորոշեց մի կերպ վոչնչացնել ժամանակի այդպիսի անօգուտ վատնումը:

Այդ նպատակով նա կատարելագործեց գործարաններում նյութերի տեղափոխման գործը: Սա նրա առաջին հաղթանակն եր: Ամենից առաջ նա ամեն տեղ շինել ավեց այսպես կոչված թեք հարթություններ. այսինքն հարթ տաշած և թեք դրած մետաղե տախտակներ:

Որինակ բանվորին հարկավոր ե պատրաստած իրը փոխադրել հետևյալին — դնում ե այդ տարրկան տախտակի գագաթին և նա սահելով իջնում ե մյուս բանվորի մոտ: Իսկ ինքը նույն ձևով ստանում ե իրեն անհրաժեշտ նյութը:

Բացի թեք հարթություններից ամբողջ գործարանի յերկարությամբ շինված են այսպես կոչված «կոնկվեյերներ»—այսինքն անվերջ շարժվող ժապավեն սեղաններ, վորոնց վրա կատարվում ե ավելի մեծ մասերի փոխադրումը, հետո զանազան ինքնաշարժ վագոնետկաներ ու սայլեր, մեծ ու փոքր բարձրացնող ծորակներ, ոդային պլատֆորմներ և այլն: այդպիսով Ֆորդի գործարանում բանվորը ուրիշ վոչ մի բանով չի զբաղվում, բացի սեղանի առաջ իր գործը կատարելուց:

Նշանավոր նորությունը հետևյալն ե. Ֆորդի գործնարանում յուրաքանչյուր բանվոր կատարում ե միմիայն մեկ խիստ վորոշված, ու պարզ գործ, որինակ բոլտի վրա շայբա դնելը և գայկան ամրացնելը: Առաջի հայացքից թվում ե թե դա ձեռնտու չե:

Բայց ընդհակառակը, բանվորը, վորին այդպիսի պարզ աշխատանք են ավել կատարում ե, ինքնաբերաբար առանց մտածելու: Դրա շնորհիվ ել զարմանալի արագությամբ գործը առաջ ե գնում:

Որինակ առաջ 9 ժամում 14 բանվորներ հավաքում եյին 2410 շատուն: Իսկ յերբ այդ աշխատանքը նույն 14 բանվորի մեջ բաժանեցին այնպես, վոր յուրաքանչյուրը կատարում եր մի հասարակ աշխատանք, վերջին դեպքում դուրս յեկավ, վոր նույն 14 բանվորը 8 ժամում, հավաքեցին 5000 շատուն այսինքն նրանց աշխատանքի արտադրողականությունը 2 սից ավելի անգամ բարձրացավ:

Ավտոմոբիլի կմախքը-կամ ինչպես ասում են շասսին դրվում ե անընդհատ շարժվող ժապավենի վրա, վորի յերկու կողմում աշխատում են բանվորները:

Ժապավենը շարժվում ե ժամանակ առ ժամանակ, վորոշ ընդհատումներով և փոխադրում շասսին մի բանվորից մյուսին: Մինչև ժապավենը անցնի գործարանի հավաքման բաժնի ամբողջ յերկարությամբ, ավտոմոբիլը արդեն պատրաստ դուրս ե գալիս:

Յերիտասարդ ժամանակ Ֆորդը ավտոմոբիլի խեղճ վարպետ եր, վոր աշխատում եր փոքրիկ կիսաքանդ տնակում: Բայց իր արհեստանոցում ել նա աշխատանքը գիտականորեն եր կազմակերպել: Հետևանքը այն յեղավ վոր Ֆորդի գործերը շատ հաջող գնացին և նա այժմ Ամերիկայի խոշորագույն կապիտալիստ ե:

Պ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# ՈՎՔԵՐ ԵՆ ՊԱՏԿՈՐՆԵՐԸ

*Բոլոր պիոներական հանդեսները, թերթերը, ունեն իրենց պատանի թղթակիցները—պատկորները։ Թղթակից կոչվում է նա վոր գրում է թերթում կամ հանդեսում շրջապատողների կյանքից, զանազան կազմակերպությունների աշխատանքների մասին և այլն։*

*Պատանի թղակիցներն իրենց թերթերում, հանդեսներում պետք է նկարագրեն պիոներական կազմակերպության կյանքը, աշխատանքները, գյուղի և քաղաքի պիոներների, դպրոցի, ընտանիքի, անապաստանների և այլ խնդիրների մասին։*

## ԻՆՋԻ ՄԱՍԻՆ ԳՐԵԼ

*Պատկորներից մեծամասնությունը պիոներ են, աշխատում են ողակում և կոլլեկտիվում։ Ահա հենց ողակի, կոլլեկտիվի, ամբողջ կազմակերպության աշխատանքներն է վոր պետք է նկարագրել, իսկ դրա համար պատկորն ակտիվ վերպով պետք է մասնակցի կոլլեկտիվի բոլոր աշխատանքներին։ Չի կարելի գրել այն բանի մասին, ինչ վոր չգիտես և չես տեսել։*

*Գրիր բոլորը ինչ վոր նոր է, հետաքրքիր, գրիր աշխատանքների լավ կողմերի մասին, հաջողությունների, բայց և մի մոռացիր գրել պակասությունների, բացասական կողմերի մասին։ Քո ընկերները, ողակը, կոլլեկտիվը և վերջապես բոլոր պիոներները կը կարդան և կաշխատեն յեղած սխալները ուղղել։ Յերբ վոր գրում ես այս կամ այն սխալների մասին, անպայման ցույց տուր, թե ինչպես պետք է ուղղել և ինչ է հարկավոր անել դրա համար։*

## ԳՐԻՐ ՇՐՋԱՊԱՏՈՂ ԿՅԱՆՔԻ ՄԱՍԻՆ

*Պիոներները ոդից չեն կախված, նրանց շուրջը կան բազմաթիվ յերեխաներ օրինակ, դպրոցում կան շատ վոչ պիոներներ, փողոցում՝ անապաստան յերեխաներ։ Այդ յերեխաների կյանքը նույպես պետք է նկարագրել։ Վերցնենք դպրոցը, այստեղ կարելի յե գտնել շատ հետաքրքիր նյութեր թերթի կամ հանդեսի համար։ Օրինակ՝ ինչպես է ընթանում դպրոցական պարապմունքները, ինչպես են պիոներները վերաբերվում դեպի դասերը, ինչպիսի աշխատանք են տանում աշակերտության մեջ, ուսուցիչների և աշակերտության վերաբերմունքը և այլն։*





*Վերցնենք ընտանիքը—ինչպես են ծնողները վերաբերվում պիոներների հետ, փոխվել է արդյոք պիոների վարքը ընտանիքում այն օրից, յերբ նա մտել է կազմակերպության մեջ, օգնում է արդյո՞ք ծնողներին, ինչպիսի աշխատանք է կատարում տանը, կատարում է արդյոք պիոներական սովորությունները և այլն։*

## ԳՐԻՐ ՆՐԱ ՄԱՍԻՆ ԻՆՉ ՎՈՐ ԳԻՏԵՍ

*Յերբեք հույս չդնես զանազան լուրերի վրա, գրի միայն այն բանի մասին ինչ վոր ինքդ լավ գիտես, նախ քան քո գրելը լավ իմացիր, տեղեկացիր, ծանոթացիր նրա հետ, ինչի մասին դու պետք է գրես, օրինակ՝ պետք է գրես անապաստանների մասին, գնա նրանց մոտ, կամ կայարանում կըլինինեն, կամ շուկայում և այլն. տեղերը իմացիր ինչպես են իրենց ժամանակը անցկացնում վորտեղ են քնում, ինչով են հետաքրքրվում և այլն։ Այդ բոլորից հետո նոր գրիր պատի լրագրին, թերթին կամ հանդեսին։*

## ԳՐԻՐ ՈՒՐԻՇՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*Շատ յերեխաներ են կարդում մեր հանդեսը, հետևապես պատկորը պետք է գրի այնպիսի բաներ, ինչ վոր հետաքրքրում է բոլորին, այլ վոչ միայն իրեն։ Չպետք գ*

գրավել միայն աշխատանքները չոր ու ցամաք թվելով այլ և անհրաժեշտ է բերել փաստերը, նկարագրել նրան։ Մի գրի այնպիսի բաների մասին, որ հայտնի չե առանց այն էլ բոլորին։



Ֆորդի գործարանից դուրս է գալիս օրական 4000 պատրաստի ավտոմոբիլներ։ Ֆորդի հաջողությունը բացատրվում է աշխատանքը գիտականորեն կազմակերպված լինելուց։

### ՊԱՏԿՈՐԻ ԶԵՆՔԸ

Միշտ վորտեղ էլ լինես պահիր քեզ մոտ մատիտ և թուղթ—դա քո զենքն է։

Ցերևակայիր ինչպիսի վատ դրություն է ստեղծվում յերբ պատկորը մի վորևէ տեղ նկատում է խարևոր յերևույթ—ուզում է գրել, ձեռքը տանում է գրպանը... վոչ թուղթ կա վոչ էլ մատիտ, կամ մեկը կա մյուսը չկա։

## Ո՞Վ ԻՆՉՊԵՍ Է ԱՊՐՈՒՄ

Գերմանիայում, Հինդենբուրգի դեմոկրատիկ հանրապետության մեջ, անվորները, բանվորուհիները և նրանց յերեխաները ապրում են սոսկալի օրեր։ Ցերեխաները սոված են մերկ ու հացի կարոտ, մինչդեռ բուրժուական ընտանիքի կանայք կաթի մեջ են լողանում մարմնի կաշին փափուկ պահելու համար, իսկ շնիկները ոգտվում են անթել հեռախոս՝ ռադիոյով։



Վերևի մեր նկարը պատկերացնում է բանվորահուն իր յերեխաներով Գերմանիայի մայրաքաղաք Բերլինի փողոցներում։ Ցերեխաները «հաց, հաց» են բացականչում։

Ներքևում նկարված է հարուստ ընտանիքի շուն, վորը ռադիոյի միջոցով լսել է ուրիշ շան հաչոցը և պատասխանում է նրան։








Երբ աշխատանքի ընթացքում քեզ համար մութ հարցեր են մնում ուղարկիր այս բաժնին: Խմբագրությունը կ՛պատասխանի:

ՀԱՐՑ

**1. Վնա՞ս է սեմուչկան (արեվածաղիկը) թե չէ:**

ՊԱՏԱՍԽԱՆ

*1. Սեմուշկա (արևածաղիկ) չութելը վորոշապես վնաս է։ Նախ նրանց վրայի ցեխ ու կեխտոտությունը չութելու ժամանակ փնասում է եմալը, վորը պաշտպանում է ատամը փնասվելուց և, վերջապես, կճեպների հետ դուրս տված թուքը զանազան միկրոբների բուն է դառնում և նպաստում նրանց զարգացմանը։ Միկրոբները ընկնում են օդի մեջ և յեթե դու մի հիվանդություն ունես, վարակում ես դրանով օդը, վորի միջոցով և ուրիշ մարդկանց։ Այդ պատճառով մեր չգրված սովորությունն ասում է. «պիոնները սեմուշկա չի չութում»։*

ՀԱՐՑ

**2. Իրավունք ունի՞ կոլվարը պատի լրագրին տված թղթակցությունների վրա մակագրելու թույլ տալու կամ չըտալու մասին, յերբ դրա համար կա հատուկ խմբագրական կոլլեգիա, պիոներների կողմից ընտրված:**

ՀԱՐՑ

**3. Դեռ վզկապ չստացած պիոները կարո՞ղ իրեն պիոներ անվանել,**

ՊԱՏԱՍԽԱՆ

*2. Պատի լրագրի բոլոր գործերը տանում է ընտրված պիոներական խմբ. կոլլեգիան. կոլվարը կարող է նրան միայն օգնել, բայց վոչ մակագրություններ անել, վորի մասին դու ասում ես։*

ՊԱՏԱՍԽԱՆ

*3. Պիոներ կոչվել և վզկապ կրել կարելի յե միայն հանդիսավոր յերդում տալուց հետո։*

*Ճիշտ է յերբեմն նյութական պակասությունների շնորհիվ պիոները դեռ չի ստանում վզկապ հանդիսավոր յերդում տալիս, բայց դա չի խանգարում նրան լինել ու կոչվել պիոներ։*

ՀԱՐՑ

**4. Հաճախ մեր կոլլեկտիվի հավաքույթներում գրվում են միայն (2-3) զեկուցումներ յեվ «ընթացիք հարցերի» քննություն:**

**Խմբագրություն, խնդրեմ ասես, սխալ չե՞ դա:**

ՊԱՏԱՍԽԱՆ

*4. Իհարկե սխալ է։ Կոլլեկտիվի հավաքույթի որակարգում պետք է լինեն ֆիզկուլտուրա խաղերով, էքսկուրսիա և կամ ակումբում կոլլեկտիվում կատարվելիք մի գործնական աշխատանք։*
*Սրանց մասին զեկուցումներն ու վորոշումները մի ժամից ավել չպետք է տևեն։*

ՀԱՐՑ

**5. Մինչև ժամը քանի՞սը պիոներները, կարող են լինել հասարակական վայրերում, ակումբներում, յերեկույթներում (օրինակ դպրոցում):**

ՊԱՏԱՍԽԱՆ

*5. Իրիկվա ժամը 10-ից վոչ ուշ, վորպեսզի ժամանակին պառկեն քնելու։*

ՀԱՐՑ

**6. Կարելի յե 13 տարեկան պիոներների հետ անցնել լենինիզմի հիմնական խնդիրների մասին:**

ՊԱՏԱՍԽԱՆ

*6. Յեթե դու խոսում ես լենինիզմի տեսության մասին, իհարկե դա պիոներներին դեռ շուտ է։ Պիոներական ու կոմյերիտական կազմակերպությունների ամբողջ աշխատանքը կայանում է նրանում, վոր նրանք դեռ նախապատրաստում են պիոներներին՝ լենինիզմը ուսումնասիրելու համար։*

*Բայց այդ կանոնավոր դրված աշխատանքն էլ արդեն հանդիսանում է Լենինի ավանդների ուսումնասիրություն և կյանքի մեջ կիրառում։*

# ՄԵՐ ԿՅԱՆՔԸ



## ԴՐՈՇԱԿՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Վերջերս բոլոր կոլլեկտիվները սկսել են կանոնավորել, ավելի ճիշտ, գնել դրոշակները: Յեթե այդ հնարավորությունը կա, ապա ուրեմն պետք է քիչ մտածել նրանց տեսքի մասին:

Հաճախ դրոշակները ծածկվում են բազմաթիվ նկարներով և լոզունգներով, այնինչ մենք ունենք նրանց վորոշ ձևը, այն է՝

1. Դրոշակը լինելու յե քառանկյունի:

2. Դրոշակի մի յերեսի վրա նկարված և գրված պետք է լինի՝

ա) լոզունգ—փոխարինողներին փոխարինում ենք.

բ) Նշանաբան «բանվոր դասակարգի ազատագրման պայքարում՝ պատրաստ».

գ) պատրաստ նշանը:

3. Յերկրորդ յերեսի վրա գրրված պետք է լինի՝

ա) կոլլեկտիվի և

բ) վոր ձեռնարկի, արտադրության, գյուղի բջիջին կից է:

Պատկոր՝ Լենտրոմար.

## ԼԱՎ ԸՆԴՈՒՆԵՑԻՆ

Զորագյուղից գնացել եյնք Դսեղ մասնակցելու պիոներական յերեկույթին:

Յերեկույթը վերջացավ գիշերը ժամը 11—ին: Մեզնից 12 հոգի գնացին իրենց բարեկամների տունը գիշերելու. մնացինք 18 հոգի: Հետներս վերցրած հացը վերջացել եր. խրճիթ ընթերցարանը, վորտեղ պետք է քնեյինք շատ ցուրտ եր, մյուս կողմից էլ քաղցը նեղում եր Փորձեցինք քնել, բայց չկարողացանք: Վորոշեցինք վերադառնալ գյուղ:

Ճանապարհը մութն եր և շատ քարքարոտ, հազիվ եինք քայլում. թեպետ պիոները չի վախենում, բայց լավ եր, վոր գելերը մեզ չը կերան:

Մի՞թե չեր կարող Դսեղի կոլլեկտիվը մի գիշեր մեզ տեղ տալ, մի՞թե եղպես է հյուրասիրում պիոները պիոներին:

Պատկոր՝ Սերգեյան

## ՔԹԵՐԸ ՎԵՐ ԵՆ ՏՆԿՈՒՄ

Մայիսի 19-ին մենք 3 ընկերներով գնացինք կայարան դիմավորելու նոր շինված ջերմաշարժին: Կայարան յեկավ նաև յերկաթ-գծի կոլլեկտիվներից մեկը նույնպես դիմավորելու ջերմաշարժին: Բայց շուտ լինելու պատճառով 20 րոպեյի չափ ցրվեցին: Այդ ժամանակամիջոցում, պիոներները սկսեցին խաղեր խաղալ. մեր ընկերներից մեկը ցանկացավ նրանց հետ խաղալ և առաջարկեց իրան էլ խաղցնել: Բայց փոխանակ յերկաթ-գծի պիոներները ընկերոջ պահանջը ընդունելու պատասխանեցին. «Անց կաց դու մեր պիոներներից չես, գնա ձեր քաղաքի պիոներների հետ խաղա»: Մենք գիտենք վոր պիոները պիոներին յեղբայր է, իսկ նրանց մեջ այդ բանը չկա: Հույս ունենք վոր այս հոդվածը կարդալով, ընկերները յերկրորդ անգամ այդ չեն կրկնի:

պիոներներ՝ Վահե, Խորեն յեվ Վարոս

## ԿՈԼԼԵԿՏԻՎ ԹԵ ԹԱՏՐՈՆ

Կենտրոնական դպրոց արհեստանոցի բջիջի անդամները փոխանակ զարկ տալու իրենց կոլլեկտիվի հասարակական-հանրոգուտ աշխատանքներին շատ են սիրում թատերական փորձերը:

Բջիջի անդամներից յերկուսն ամեն յերեկո հավաքվում են պիոներների հետ՝ ինչ է—փորձ ենք անում:

Ուշանալու պատճառով փորձը միշտ ընկնում է ուշ գիշերին, շատ անգամ էլ փորձի կեսին վեճի յեն բռնվում: Սկսում են իրար վիրավորել և անվայել խոսքեր շպրտել:

Բջիջը պետք է պարտավորեցնի պիոներների դաստիարակությամբ զբաղվող կոմսոմոլիստներին լուրջ մտենալ այդ խնդրին: Թե չէ, ինչ դուրս կգա:

Պատկոր՝ Ցերինե

## ԿԱԶՄԱԿԵՐՊՎԵՑԻՆՔ —ՀԻՄԱ ԽՈՐԱՑՆԵՆՔ

Արփայի պիոներական կոլլեկտիվը կամաց-կամաց աշխուժանում է: Մայիսի 1-ին մենք գնացինք Քեշիշքենդ և կատարեցինք մայիսի

մեծ տոնը։ Այնտեղից վերադարձանք Արփա։ Մայիսի 30-ին տարան Յերևան եկսկուրսիայի։

Այնտեղ 8 օր մնացինք և տեսանք գործարաններ և գնացինք կինո։ Այժմ հարկավոր է, որ մեր աշխատանքը խորացնենք և գնանք Լենինի ուղիով։

Պիոներ Զավեն

## ՍՏԵՐԻ ՍՈՒՏԸ

Զարչիների ու տերտերների տարածած ստերը անպակաս են։

Նրանք, տեսնելով, որ երեկվա «անլեզու» բատրակը նոր գրել, կարդալ է սովորում, լեզու է առնում, գյուղում լուր տարածեցին, թե ում յերեխան որ պիոներ գրվի նրան պետք է տանեն Յերևան փորը դարձնեն։

Բայց մեր ուսուցչի և կուսակցական բջիջի ձեռք առած միջոցների շնորհիվ ստերի սուտ լուրը խանգարվեց։

Ընկեր պիոներներ, պատրաստ յեղեք, որ ամեն մի սուտ լուր տեղն ու տեղը վերացնենք։

Պատկոր՝ Աղասի

## ՊԻՈՆԵՐ—«ՍՊԵՑՆԵՐ»

Յերևանի պիոներական նվագախմբի անդամները շատ ազատ են զգում իրենց։ Որինակ բերեմ։ 7-ամյա № 7-րդ դպրոցը Տրոցկու թատրոնում բեմադրեց ներկայացում։ Այդտեղ եյին գտնվում ը. ը. Հենրիկը, Կոտիկը, Գարուշը, Գուրգենը և մի շարք պիոներներ։

Վարագույրը բարձրանում եր թե չե, այդ ընկերները սկսում եյին աղջիկների հետ զրույց անել, որով խանգարում եյին հանդիսականներին։

Մի 2—3 շաբաթ առաջ նույն ընկերները մոտ ժամը 9—10 կիներ որ Ցարսկի փողոցում խաղում եյին լավիշկի և ահագին աղմուկ եյին բարձրացնում։

Ինչու չեն նրանք այդպես։

Գուցե վարվենև իրենց «սպեց» են զգում։ Լավ չէ։

Պատկոր՝ Բենոու

## ՈՒՐԱԽ ՅԵՐԵՎՈՒՅԹ

Ալլավերդու հույն գյուղում պիոներական կոլեկտիվի հունիսի 14-ի հավաքույթին ներկա եյին և ծնողները։ Հավաքույթը վերջացավ ներկայացումով, որից հետո ծնողներն ասում եյին՝ կեցցե պիոներական կազմակերպությունը և ծափահարում եյին։

Այս բոլորից հետո ծնողները ուրախ սրտով գնացին։

Ալ. բջիջի անդամ՝ Քեռնիկ

**Խմբ. ծան.** Թող մյուս կոլեկտիվները հետևեն այս որինակին և ծնողներին մասնակից դարձնեն պիոներական կոլեկտիվի աշխատանքներին։

## ՊԱՏԻԺԸ ԿՈՒՂՂԻ

Այս տարի պիոներ աշակերտներից մեծ մասը վերաքննություններ է ստացել և մի մասն ել մնացել է դասարանում։

Դա ցույց է տալիս նրանց՝ անտարբերությունը դեպի դպրոցը և գիտությունը։ Բայց դրանով ընկնում է մեր կազմակերպության հեղինակությունը և դադարում անկազմակերպ պատանիների հոսանքը դեպի մեր շարքերը։

Այդ իսկ պատճառով ամեն մի կոլեկտիվը պետք է, ուսումնասիրի նույն կոլեկտիվում գրանցված թույլ աշակերտ—պիոների հարցը, իմանա նրա վերաքննություն ստանալու կամ դասարանում մնալու պատճառները և [illegible] գտնի նրան։

Վորքան ակտիվ և գիտակից լինի թույլ պիոներ-աշակերտը այնքան ել խիստ պետքէ վարվել հետը։

Իսկ թույլ կամ դասարանում մնացող կոլեկտիվավարին և ոգնականին ոչ մի զիջում կամ ներում։

Հայկ

**Խմբ. կողմից։** Պիոներներ, արդյոք ճիշտ է գտնում Հայկը։

## ՈԳՆԵՆՔ ՉՔԱՎՈՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ

Մեր շարքերում շատ չքավոր պիոներներ կան, պետք է ոգնել նրանց։

Յեթե կոլեկտիվը ունի մի քանի չքավոր պիոներ, կարող է իր ջանքերով կազմակերպել յերեկույթ, հավաքել նվերներ և թեկուզ չնչին գումարով գնել նրանց համար դասարանական, պիոներական և կամ ուրիշ անհրաժեշտ պիտույքներ։

Ամեն մի պիոների պարտականությունն է ոգնել իր չքավոր ընկերոջը։

Խոկուլի Գասպարյան

## ԱՂՋԻԿՆԵՐԸ ԱՎԵԼԱՆՈՒՄ ԵՆ

Քեշիշքենդի պիոներական կազմակերպությունն շատանում է աղջիկներով։ Սկսած 1924թ. ոգոստ. ամսից գոյություն ունի պիոներական կազմակերպությունն Քեշիշքենդում։ Մինչև 1925թ. մայիսի 20-ին ունեցել է աղջիկ անդամներ 5 պիոներներ, բայց այդ մի քանի ամսվա ընթացքում ավելացել է 8 աղջիկներով։ Այժմ կազմակերպությունն ունի 13 պիոներ-աղջիկ։

Վարդան Խաչատրյան

---

ՊԱՏԿՈՐ!

ԹՂԹԱԿՑԻՐ

„Պիոներ" ամսագրին

---

# ՍԱՔՈՆ ԲԱՆԱԿՈՒՄ

1

Կոլեկտիվի ակումբի դռան վրա գրված էր, ավելի շուտ խզմզած.

> **ՀԱՅՏԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ**
>
> Ընկ. Լուկաշինի անվան ողակի անդամները թող պատրաստ լինեն բանակ գնալու համար։ Որվա մասին կհայտնեմ առանձին։ Չենթարկվողները կենթարկվեն պատասխանատվության։
>
> **Ողակավար**

— Ուռռաա..., գոռացին միաբերան Սաքոն ու Ռուբիկը,—բանակ ենք գնում։

Ռուբիկը ուրախությունից մարմնամարզական թռիչքներ արեց, բարձրացնելով փոշու ամպեր։

Սաքոն իր ձեռքում գտնված ֆուտբոլի գնդակը «մոմեց» կոլեկտիվի դռան ճակատին։

Ակումբի դուռը ճռճռալեն բացվեց, բայց Ռուբիկն ու Սաքոն սրեցին իրենց վոտքերը ու... կորան։

2

Սաքոյենց տանը յերեք որ պատրաստություն եյին տեսնում։

Սաքոն բոլորի գանգեն տարավ՝ հեշտ բա՞ն է, բանակ է գնում։

— Քաղաքացի մայրիկ,—կպչում էր մոր յախիցը,—սեխն ու թելը չմոռանաս, մի բոլ էլ շաքար դիր։

Սաքոյի յեղբայր Հոկտեմբերիկ Սպարտակը արդեն ինը անգամ լաց յեղավ, որական յերեք անգամ, բայց Սաքոն անողոք էր.

— Ի՞նչ է։ Դո՞ւ էլ գաս բանակ։

Չեմ թույլ տալիս։ Հաս-կա-ցա՞ր։

Յերբ հայտարարվեց գնալու որվա մասին, այդ գիշեր Սաքոն չկարողացավ քնել և միշտ վեր էր թռչում անկողնից։

— Խեղճ երեխես մաշվեց.—տրորվում էր Սաքոյի մերը։

3

Առավոտվա ժամի 4-ին, արևը չծագած Սաքոն բյուրոյի բակումն էր, վորտեղից հազիվ ժամի 7-ին նրանք ճանապարհ ընկան։

Սաքոյի բեռը փթից պակաս չէր լինի՝ սեխից բռնած մինչև վերմակը և կակուղ բարձը։

Ռուբիկը, ընդհակառակը, ուներ միայն մի գթալ, բաժակ և մի պարկ էլ իրիս։

— Սաքո, ա Սաքո,—ծաղրում էր ճանապարհին Ռուբիկը,—յերեք իրիս տամ ինձ էլ շալակի, շատ թեթև ես։

Սաքոն քրտինքի յէր տալիս և լռում։

Որը շոգ էր, ճանապարհը հեռու։

Արդեն իրիկնամուտ էր, յերբ հասան անտառի փեշերը, վորտեղ և վորոշեցին վրան խփել։

Սաքոն ջարդված էր, վոտքերը հազիվ էր քարշ տալիս, թեև չէր ուզում ցույց տալ իր հոգնածությունը։

Ռուբիկը և մյուս պիոներները ծիծաղում եյին Սաքոյի դրության վրա։

— Սպասեք, լավ, ձեր հախիցը կը



Սաքոյի հերթն էր պահակ կանգնելու

գամ,—սպառնում էր մտքումը Սաքոն, թեև ինքն էլ չէր հասկանում, թե ինչ կերպ կարող է վրեժխնդիր լինել։

4

Բոցավառվեց պիոներական խարույկը։

—Ֆյու...ուտ, լսվեց ողակավարի սուլոցը. բոլորը հավաքվեցին խարույկի շուրջը։

Չնայած հոգնածությանը, Սաքոն արդեն այնտեղ էր։

«Ռիժի» Մանվելը, ողակավարը, հազաց և սկսեց ճառել։

— Ուրեմն, ընկերներ, մենք բանակումն ենք, բընության գրկում, բայց չպետք է մոռանանք հասարակական և քաղաքական պիոներական հերթական աշխատանքները ..

— Ռիժի,—կտրեց նրան Ռուբիկը, մի գրույց անենք խարույկի շուրջը։

— Հա, հա հա,—հավանեցին բոլորը։

— Տո լսեք է՛, վերջացնեմ,—հերսոտեց Ռիժին։

— Ուրեմն, ընկերներ մեր բնության գրկում...

Հանկարծ մութ յերկնքից փայլատակեց կայծակը, գոռգոռացին ամպերը և շըրըփալեն սաստիկ անձրև յեկավ։

Խարույկը խեղդվեց, դատարկվեց, վազեցին վրանի տակ, բայց ինչ...

Այնտեղ արդեն կես արշին ջուր էր։

5

Գիշերվա կեսին անձրևը կտրվեց։

Սաքոյի հերթն էր պահակ կանգնելու։ Թրջված Սաքոն հասկացավ վոր էս բանակային կյանքը բոլորովին նրան չէր յերազածին։

Տղերքը թեև թաց, մի կերպ քնել եյին։ Սաքոն սկսեց շվացնել պիոներական յերգ և չէր նայում շուրջը։

Բայց շվոցը դուրս չէր գալիս՝ ամեն ծառի հետև նրան թշնամի յէր թվում, խեղճ Սաքոն էլ դողում էր—չկարծեք թե վախից, վոչ, ցրտի՛ց։

6.

Առավոտյան տղերքը քարշ տվին Սաքոյին լողանալու։

Սաքոն լող տալ չգիտեր և միայն նայում էր, թե ինչպես Ռուբիկը Պողոսը, Կարոն և ուրիշները ճեղքում եյին ջուրը, հասնում մյուս ափը։

Ռուբիկը գոռում էր.

— Սաքո, է՛յ, հանիր շորերդ։

Սաքոն մտածեց, մտածեց և վորոշեց լողանալ։

—Ինչ կա վոր, ափից չեմ հեռանա։



Ողակը հավաքվեց խարույկի շուրջը

Մտավ կամացուկ պաղ ջրի մեջ և պինդ բռնեց ափին գտնվող ծառից։

Մեկ էլ հանկարծ ծառի ճյուղը կոտրվեց և Սաքոն, կըլըմփ... անցավ ջրի տակը։

Սաքոյի խեղդվելը առաջինը նկատեց Կարոն։

— Տղերք, Սաքոն խեղդվեց. հասեք օգնելու։

7.

Սաքոյին բերեցին բանակ, վրանի տակ։ Բժշկականին ջուր էր կուլ տվել, տրամադրությունը սաստիկ վատ էր։

Պիոներները յերգում եյին

«Պիոներական բանակ ինձ
ուղարկեցին
Բանակումը գետի մեջ
ինձ խեղդեցին»։

Սաքոն էլի չարանում էր, բայց լուռ էր։

8.

Մի շաբթից հետո պիոներները վերադարձան Յերևան բավականին կեղտոտ, պատառոտված շորերով, կոշիկներով։

Սաքոն կորցրել էր բարձը և չուստերից մեկը, Ռուբիկը արդեն վոչինչ չուներ։

Յերևանի այգիներում, դեռ քաղաքին չհասած, Ռիժին կանգնեցրեց ոդակը։

— Տղերք ջան, դուք գիտեք էլի, թող մեր արածների մասին վոչ վոք չիմանա...

Բոլորն էլ համաձայնվեցին՝ կոտրած ատամով Կարոն, աչքը կապած Գողոսը և մյուսները։ Միայն Սաքոն մտածեց.

— Այ, հիմա ձեր հախիցը կգամ։

Ու պատմում էր բոլորին։

**Վորսող**









## ԱՄՐՈՑԻ ԱՌՈՒՄԸ

Խաղավայրը միջակ մեծությամբ հարթ հրապարակ, Կոլեկտիվը կազմում է շրջան։ Պիոներները միմյանցից գտնվում են յերկու ձեռքի տարածության հեռավորության վրա։ Շրջանի մեջ տեղը գտնվում է ամրոցը կազմված գուրզերից, գավազաններից կամ ուրիշ քարերից։ Պիոներներից մեկը պաշտպանում է ամրոցը։ Հրահանգչի սուլիչով կամ հրամանով, պիոներների մեկը աշխատում է ֆուտբոլի գնդակով խփել ամրոցին և վայր գցել։ Պաշտպանը ձեռքով հետ է խփում գնդակը, թույլ չտալով նրան դիպչել ամրոցին։ Ամրոցը գնդակից կարելի յե պաշտպանել և մարմնի ուրիշ մասերով, սակայն գնդակին կարելի յե խփել միայն ձեռքով։

Հետ խփած գնդակը, մյուս խաղացողի հարվածով գնում է դեպի ամրոցը։ Այսպես խաղը շարունակվում է մինչև գնդակով ամրոցին դիպչելը։ Այս դեպքում դիպչողը դառնում է պաշտպան իսկ նախկինը գնում է նրա տեղը։ Շրջանում կանգնած պիոներները գնդակին կարող են խփել և ձեռքով և վոտքով։

## ԳՆԴԱԿԸ ՈԴԻ ՄԵՋ

Հրահանգչի նշանով շրջանը կազմող խաղվորները ձգում են գնդակը զանազան ուղղությամբ։ Պետք է աշխատել գնդակը ձգել «խաղատարի» հակառակ ուղղությամբ։ Խաղատարը վազվզելով շրջանի մեջ, ջանում է գնդակը բռնել ոդում կամ վորևե մեկի ձեռքում։ Յեթե նրան հաջողվում է, այն ժամանակ նա գրավում է այն պիոների տեղը, վորի ձեռքում բռնել է, կամ նրա, վորի գլխից ոդում է բռնել։ Իսկ այդ պիոները բռնում է խաղատարի տեղը։

## ՍԵՎ ՈՒ ՍՊԻՏԱԿ

Խաղացող պիոներների թիվը կարող հասնել մինչև քառասունի։

Խաղի վայրը. մեծ հրապարակ կամ բակ։ Խաղավայրը գծով բաժանվում է 2 մասի հակառակ ծայրերում գտնվում են «սևերի և սպիտակների» տները։ Բոլոր խաղացողները բաժանվում են յերկու խմբի սև և սպիտակ։ Յերկու խումբն էլ շարվում են գծով հրապարակի մեջտեղում յուրաքանչյուր յերեսը դեպի իրենց տունը մի քայլ հեռու։ Տարածությունը յերկու խմբերի մեջ վոչ պակաս քան յերկու քայլ։ Հրահանգիչը հսկում է խաղի ամբողջ ընթացքին։ Հենց վոր հրահանգիչը կանչեց «սեվ», խմբի խաղացողները վազում են դեպի տուն, իսկ սպիտակների խումբը շուռ է գալիս և վազում նրանց բռնելու։ Բռնված խաղացողները դառնում են բռնողների գերին և դուրս գալիս խաղից։ Մնացածները նորից կանգնում իրենց տեղերը։ Հրահանգիչը նորից ասում է սեվ կամ սպիտակ և այդպես խաղը շարունակվելու յե մինչև վորևե խմբի խաղացողներից բոլորն էլ կը բռնվեն։



# ՇԱՐԺԻՐ ՈՒՂԵՂԴ!

## ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ!

*Ներքև տեղավորված ռեբուսների լուծում ուղարկեք խմբագրություն:*

*Լուծողների ազգանունները կտպագրվեն «Պիոների» № №-ում:*



ՌԵԲՈՒՍ 1



ՌԵԲՈՒՍ 2

### ՔԱ՞ՆԻՍ ԱՐԺԻ ԿԱԶՄԸ

*Գիրքը կազմով արժի 2 ռ. 50 կ.: Գիրքը կազմից յերկու-ռուբլով թանկ է: Քանի՞ս արժի կազմը:*

### ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ԽՆԴԻՐ

*Ի՞նչ նշաններ պիտի դնել այս թվերի մեջտեղը, վորպեսզի ստանալ 15:*

*1 2 3 4 5 6 7 8 9 10 = 15*



*Այս նկարի մեջ պիոներ կա, վո՞րտեղ է նա թագնված:*

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԼԵԳԻԱ. Ար. Բզնունի, Աս. Մանուկյան, Տ. Մուշեղյան, Յամփր, Ս. Շագունց,

ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒ ԽՄԲԱԳԻՐ՝ Ար. Բզնունի

Գրաեկվար № 126բ. Պետհրատի 2-րդ տպարան Յերևանում Տիրաժ 3,000

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԻՐ

ՊԻՈՆԵՐԻՆ

ԳԻՆՆ Է 30 Կ.

ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ

ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿՈԼԼԵԿՏԻՎ

ՄԱՆԿԱՏՈՒՆ,

ԴՊՐՈՑ,

ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՈՂԱԿ,

ԼԵՆԿՈՄՅԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ԲՋԻՋ

ՊԵՏՔ Է

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԻ (ԳԱՎԼՐՅՈՒՐՈՅՈՒՄ)

# „ՊԻՈՆԵՐ“ — ԱՄՍԱԳՐԻՆ

ՕՐԳԱՆ

Հ. Լ. Կ. ՅԵ. Մ. ԿԵՆՏԿՈՄԻՆ ԿԻՑ ՊԱՏԱՆԵԿԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԲՅՈՒՐՈՅԻ

ԳՐԻՐ «ՊԻՈՆԵՐ»-ԻՆ

ՏԱՐԱԾԻՐ

ԿԱՐԴԱ «ՊԻՈՆԵՐ»-Ը

** „ՊԻՈՆԵՐ“-Ը **

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԻՐ ՊԻՈՆԵՐԻՆ